# ՅՈՎՀԱՆՆՈՒ
# ՈՍԿԵԲԵՐԱՆԻ
## ԵՒ ԳՐԻԳՈՐԻ
# ՍԱՐԿԱՒԱԳԱՊԵՏԻ
# ՆԵՐԲՈՂԵԱՆՔ
## Ի Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ




Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի Տպարանի Մխիթարեանց

1853

# Ա Զ Դ

Արփիառնկիղըն և անշէջ հրատ Հայկազնեայցս հոգևոր լուսաւորութեանն՝ Գրիգորիոս առաքելաշաւիղ մեր հայրապետ, 'ի Դ և 'ի Ե դարուս երկուորեակս Սոփերացս հայկականաց՝ ընկալցի զպատիւ իւրոց անկարօտն փառաց, զնշխարեալսն 'ի ժամանակէ՝ զընտիր ընտիր գովասանական բանս երախտայուշ ծննդոց իւրոց և մերոց ազնիւ նախնեաց. որոց նախակարգեմք, որպէս և արժանն պահանջէ, զբարեկամական գրուածս Յովհաննու Ոսկեբերանի առ Նոյն մերս Հայր. յորոց առաջինն մանաւանդ աներկբայապէս բերէ զհարազատ

տիպս մնաց և որոց սքանչելւոյ
քարոզչին այնորիկ. որում իշխեմք
տառաւելագոյն պանծանօք երանել
զՀայրս մեր՝ զի եգիտ ճաշակարար
խնքեան զՈսկեբերանն մեծ, քան ա-
ղեքսանդրացւոյն՝ զգօան Աքիլլեա՝
վասն զՀոմերոս գտանել քարոզ իւ-
րոցն քաջարութեանց: Գովեմ և
զԴէոսկորոս՝ որ զայնպիսի հզօր
լեզու զգաստապարտեալն 'ի լռու-
թիւն առ 'ի Հելլենաց՝ զխօսաց յետին
անզգամ շարժել 'ի գովեստ փառաւոյ
հօրն Հայոց, և տալ թէ լռել. և
սփոփանեամ ընդ իմ Նախնեաւն՝ որք
լռանէլք և տառաւել արդիւնագործք
և մեծի Հօրն իւրեանց յարգողք
գոլան, քան զայլ պանծացեալքս
յորդխութիւն այնպիսւոյն, որում
և ոչն գոյին արժանաւորք. վասն
հեռի և քինու բանաքարելոյն և
'ի թեր ձգելոյ զմբռազն վաւեալ
հասարակաց տանս Հայոց 'ի լոյս

զուարթարար և յոգի սփրարկու. որ և 'ի յախուռն յարձակման ասա և 'ի շփոթ աղաղակէն ամփոփեալ զծայրս ճառագայթիցն՝ ադօտս ա-ղօտս ճաճանչէ, 'ի դալուկն գըժ-նեայ նշաւակեալ զդէմս զնոցին իսկ զկարծեցելոցն արծարծողաց զնոյն լոյս. որով 'ի դէպ իսկ արդեօք և մեզ 'ի ժամուս առնուլ 'ի բերան զսրտառուչ բանս տարագիր Հայրա-պետին Բիւզանդիոյ (Ա. Էջ 46), զի “ Մոլորեցուցիչք բազումք, և
” մոլորեալքն ևս առաւել ”. և տարակոյս աչօք և մտօք հայել և հայցել ընդ Նմին (56) “ Ո՞ւր են
” բազմութիւնք երանելի եպիսկո-
” պոսացն առաջնոց և վարդապե-
” տացն՝ որք ծագեցին իբրև զփայ-
” լակն յաշխարհի. բանս կենդա-
” նականս ունելով յինքեանս ”.
և ընդ Վարդանայ (Բ. 66) իղձ լինել, “ Ո՞ տայր մեզ զտեսութիւնն

» զայն ցանկալի, և զերծ յայժ-
» մու թշուառութենէս և 'ի վա-
» տաբաղդութեանցս»: Այլ շատ
լեցի մեզ աստանօր ընդ քարոզից
մերոց և ընդ քարոզելոյն' «Մեծ-
» տամբեր նեղութեանցս յիշատա-
» կաւ մխիթարեալ», աղաչել ըզ-
նոսին իսկ (Ա. 88) «ոչ եւս մե-
» կուսանալ հոգեւորական այցե-
» լութեամբ առ 'ի մեզ», և 'ի
հանուրց Հայաստանեայց:



Ճառից Ոսկեբերանին բազում օրինակք էին առ մեզ. Սարկաւա- գապետին Գրիգորի' որոյ ժաման- նակն անյայտ, մի օրինակ գրեալ 'ի ՈԿԴ. Սարկաւագային մի' գրեալ 'ի ՉՂԲ. իսկ Վարդանայն և Եր- զնկացւոյն երկուք, մին գրեալ 'ի ՉՂԲ, միւսն անթուական:

ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ
ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԱ_
ՊԵՏԻ

ՆԵՐԲՈՂԵԱՆ
ԱՍԱՑԵԱԼ ՅԱՂԱԳՍ ՎԱՐՈՒՑ ԵՒ ՆԱ_
ՀԱՏԱԿՈՒԹԵԱՆ
ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ

ՀԱՅՐԱՊԵՏԻ

Ի ԿՈԿԻՍՈՆ ՀԱՅՈՑ ՄԻՆՉ ՅԱՔՍՈ_
ՐԱՆՍ ԷՐ,
Ի ԽՆԴՐՈՅ ՀԱՅԱԶԻՆ ՈՐՈՒՄՆ ԵՊԻՍ_
ԿՈՊՈՍԻ
ԵՒ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՀԱՄԱԶԳԻՈՅ ՆՈՐԻՆ

ԴԻՈՍԿՈՐՈՍ ԱՆՈՒՆ ԿՈՉԵՑԵԼՈՅ,

ԵՒ ԱՅԼ ԵՒՍ ՅՈԳՆԱԽՈՒՄԲ ԲԱԶ_
ՄՈՒԹԵԱՆ, ՈՐՔ ԺՈՂՈՎԵԱԼ ԷԻՆ
ՅԱՒՈՒՐ ՅԻՇԱՏԱԿԻ ՄԵԾԱՀՌՉԱԿ
ՏՕՆԻ ՆՈՐԻՆ ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ
ԱՐԵՒԵԼԵԱՆ ԱՇԽԱՐՀԻՆ

Հիաշալի է մեզ տօնս այսօր և պայծառագոյն քան զսովորականն շարագրութիւնս ։ Եւ զինչ իցէ պատճառ, կամ ո՞վ արդեւք կոչնատէր բազմահոյլ հանդիսիս ․ ո՞ այլ ոք քան եթէ յոքներանեան հայրն մեր և մեծ խոստովանողն , զորոյ այսօր կատարեմք զյիշատակ ․ որ առ նորայն արիական քաջութեանցն պատմութիւն՝ զմիտս և զխորհուրդս հանդերձ ամենայն զգայարանօք մաքրեսցուք , թերեւս արժանի լինիցիմք ընդունելով՚ի հոգւոյն բան իմաստութեան մանաւորաբար զերանելւոյ հօրն պատմել զառաքինութիւն ։ Ոչ նորա կարօտ գոլով մարդկայինս բարեբանութեան յառաւելութիւն ինչ պատուոյ և փառաց , այլ մեք մանաւանդ կարօ-

տեսցէք առ 'ի նմանէն բարեխօսու_
թեան, որքան տակաւին եւս առա_
ջնորդիմք 'ի մարմնի · որոյ առիթ
մխիթարութեան է և բարեբանելն
միայն զբազմավիշտ նահատակին, այլ
և նախանձաւոր եւս լինել կարեւոր
է հրեշտակականման վարուց նորին
առաքինութեան, թէպէտեւ անկա_
րելի գոլով ըստ համեմատութեան ·
զի ով ոք 'ի հողեղինաց այնչափ ան_
հանդուրժելի կրից չարչարանաց
տանել կարասցէ · զոր ոչ և 'ի հարցն
առաջնոց նահապետացն, և կամ
որք զկնի անօրէնութեան փրկչին՝
չարչարանաց նորա հետեւեցին ձրզ_
նաւորք և վկայք · միայն ըստ կարո_
ղութեան մերում և յօժարական
տրոյ գովասանական հօրն կցոր_
դութիւն բերելով մատուցուք 'ի
բանս, ըստ ուժմին իմաստնոյ, եթէ
Յիշատակ արդարոյ հանդերձ գո_
վութեամբ · և 'ի գովութիւնս ար_
դարոց ցնծան ժողովուրդք ոչ 'ի
փառս ինչ առաւելլով նոցա, այլ
բարեբանողացս մեզ բազում այսու
ընձեռեն շահս ։

Եւ արդ քանզի այսօր աստուածազգեաց հայրն մեր հոգեւոր, հովիւ և վկայ, յեղծանելի կենաց աստի յերջանիկն արդարեւ փոխադրեցաւ 'ի կեանս, ուր անպատում ուրախութիւնն է և անհպելի լոյսն, ուր բեւրք հրեշտակացն են և անդրանկացն բանակք, ուր առաքելոցն աթոռքն են և մարգարէիցն տեսարանքն, ուր դաւազանք նահապետացն են և պսակք մարտիրոսացն,. ուր վերինն Երուսաղէմ է և անսպառ խաղաղութիւնն, ուր ժողովք սրբոցն է և արդարոցն բնակութիւն: Բայց մեք զի՞նչ արասցուք այսքան թշուառաբեր վշտօք շրջապատեալ. քանզի ոչ գտանիմք արժանաւոր, որով զարժանին զովութեան բարեբանեսցուք. և զի՞նչ ապաքէն լռեսցո՞ւք. և ե՞ր վասն հանդիսացաք յայսմ վայրի. այլ ասեմք եթէ վասն զի՝ ոչ կարացաք բանի հաւասարել զմեծութիւն գործոյն, և նորին աղագաւ առաւել եւս պարտ և արժան էր խօսել. քանզի և այս 'ի մեծագունից գո-

վաւթեանց է , ոչ կարել զառաւե_
լութիւն իւրեն՝ բանի ցուցանել զու_
գական . զի յարժամ 'ի վեր քան
զբնութիւնս լինին ուղղութիւնքն ,
քաղցրայար իսկ է թէ անդր քան
զմարդկային մտածութիւնս վերամ_
բառնան գովասանութիւնքն : Բայց
ոչ առնէ անտես երանելիս զմեզ ,
և ոչ 'ի բաց մերժէ զաղքատիմաց
մերս բան . այլ ըստ նմանութեան
փրկչին համարակալ զպակասագոյն
ընծայսն որ 'ի մէնջ , մեծ իմն հա_
մարի , և բիւրապատիկ փոխարէնս
ընդ փոքրունցն հատուցանէ . քան_
զի ոչ առ առաւելութիւն իւրացն ,
այլ առ առատութիւն մտացն եւեթ
հայի . վասն որոյ թէպէտեւ յոյժ
նուաղագոյնք են մերքս , սակայն յո_
րոց ծախանամքս՝ առատ մատուցա_
նեմք . զի և Աստուծոյ սիրելիքն
ըստ կարողութեան պահանջեն : Նա
և այսու առաւել եւս ճանաչի հան_
դէս մեծախոհութեան սորա , ոչ
'ի բաց մերժել զգուզնաքեայ ըն_
ծայաբերութիւնս 'ի տկար մար_
մնոյ և բազմադիմի վշտօք պաշարեալ

անձնէ . այլ ընկալեալ 'ի մէնջ ըզ-գովասանութեանս բան , որում ոչ երբէք կարօտանայ , հատուցանէ փոխարէնս գործովք . որոց յոյժ մանաւանդ կարօտիմք և պիտոյանամք :

Բեր այսուհետև զխոստմանն հատուցուք տոկոսիս , սկիզբն առաջակայիս առնելով բանի . բայց ոչ գիտեմ եթէ զո՞րս յուղղութեանց առնն յիշատակեցից : Զարիականն մրցումն յասպարիզին , եթէ զարեան չափ ժուժկալութիւնն զանազան տանջանօք . զընթացս նահատակութեանն , եթէ զբազմամեայ համբերութիւնն անբերելի նեղութեանցն 'ի խոր վիրապին . զառաքելական քարոզութիւնն , եթէ զշնորհս մարգարէութեանն , զ՛հովուական վերակացութիւնն , եթէ զանմարմնապէս յանապատի ճգնութիւնն . քանզի յամենայնի մեծախորհուրդ է այրն , յամենայնի քաջահաճոյ , յամենայնի առաքինի , յամենայնի ընտիր , յամենայնի համբերող , իբ-

րեւ արձան անխախտելի, երբեւ աշտարակ անպարտելի ընդդէմ հնարից տատանմայի :

Սակայն ՚ի սկզբանց անտի պարտ և արժան է բուռն հարկանել բանիս . յորոց արդեւք . յայտ իսկ է եթէ ՚ի կողմանէ հոգւոյն շնորհաց, առաջնորդելով նմա ՚ի մանկական տիոց անտի ՚ի հաւատոյն ճշմարտութիւն . քանզի նմանապէս յայսմիկ լինել էին թուի երջանիկ հայրս մեր մեծին նահապետին և աստուածահօրն Աբրահամու . զի որպէս առ նա հրաման հասեալ յԱստուծոյ , ելանել յաշխարհէն հայրենի և յանհաւատութեան ազգէն, սոյնօրինակ և երանելիս այս իբր կոչմամբ Աստուծոյ ելանելով ՚ի խաւարէն կռապաշտութեան աշխարհէն , մտանէր յարդարեւ երկիրն աւետեաց , ուր մեծագոյն պատուիրանացն Քրիստոսի հնչէին ձայնք , ուր յայտնապէս փրկականն քարոզէր աւետարան , յորում տեղւոջ վարժեալ իսկ լինէր ՚ի գա. աշակերտութիւն անօրինական խոր-

հրրդոցն Քրիստոսի , վերահաստատ լինելով 'ի դոյզն ժամանակի : Յետ այսր դարձեալ անտեսութեան խորհուրդ , և դարձեալ վերստին անդրէն կոչումն , ուր հանդերձեալ էր զընթացսն կատարել և զհաւատսըն պահել , և լինել հայր ազգաց բազմաց ըստ խոստացելումն ազգի ազգի չարչարանօք և ճգնութեամբ , զի ոչ քաղաք թաքչի որ 'ի վերայ լերինն , և ոչ լուցեալ ճրագ դնի ընդ գրուանաւ , այլ 'ի վերայ աշտանակի , զի լոյս տայցէ ամենեցուն . սոյնպէս և սորայս և իւր և անուն պայծառագոյն քան զարեգակն , յորմէ ոչինչ արգելու զմեզ :

Նախ յայտ առնել զանուանակոչութիւն երանելւոյս , զի 'ի կոչմանէ անտի ծանիցուք երկնային զքաղաքավարութիւն սորա , և առաքինասէր վարուք անմարմնոցն գոլ համեմատ : Գրիգորիոս հսկող առաքինութեամբ , արդարութեան օրինակ , Քրիստոսի արժանաւոր պսակաւոր , յասպարիզի ճգնութեան հռչակաւոր , մեծ խոստովանող նո-

րին և վկայ, գեղեցիկ գործարան հոգւոյն Աստուծոյ, քահանայից գաղափար, հովուապետաց նկարագիր. երկնային զօրաց քաղաքակից, մարտիրոսաց պարծանք, առաքելոց լրումն, մարմնաւոր հրեշտակ յերկրի: Գրիգորիոս որ գեղեցկապէս զոտս մտացն 'ի վերայ անշարժ վիմին հաւատոյ հաստատելով փութայր յերկինս բարձրանալ զի անմիջոց զանգանօք լուսաւորութիւնն տեսանիցէ պայծառագոյն աչօք, զոր և տեսանէր իսկ հանապազ մաքուր մտօք ընդ Դաւթայ զտէր փառաց ընդ աջմէ իւրմէ, որով յերկդիմի վշտացն հեղեղատէ ոչ շարժէր, 'ի բանաւորագունիցն ասեմ մարդկան և գիւաց: Գրիգորիոս որ 'ի մէգ աստուածային շնորհացն հրպեալ մտանէր, իբրև զՄովսէսն այն 'ի լերինն, ուստի ոչ ձեռամբ, այլ յայտնութեամբ տեսլեանն 'ի սրտին գործարանի հոգւոյն մատամբ զտախտակսն գործեալ ընդունէր, և զժողովուրդ իւր սեպհական հրաշիցն գործովք օրհնադրէր,

և 'ի խաւարէ բազմաստուած կռա-
պաշտութեան արտաքս հանել, ոչ
յերկիր ժառանգութեան որպէս
Յեսու Նաւեայ, այլ յերկինս ա-
ռաջնորդեալ ածէր յաջողակի ։
Գրիգորիոս որ զբարեպաշտութիւն
Ճշմարիտ հաւատոյն առաջի բռնա-
ւոր արքային քարոզէր համարձա-
կութեամբ և ոչ զանգիտեալ զար-
հուրեր առ 'ի նմանէն ։ Գրիգորիոս
որ զմայելչութիւն աշխարհիս այսո-
րիկ և զկենցաղական հեշտութիւնս
կղկղանս համարելով առ ոտն հար-
կանէր, և զերկրայինս թողլով զե-
նաւորութիւն, լաւագունացն բա-
ռըն հարեալ Քրիստոսի հետեւէր ։
Գրիգորիոս որ նախապետութեան
շնորհի արժանացեալ, մարգարէա-
կան հոգւոյն ակամբ գուշակէր ըղ-
հանդերձեալսն, և առաքելական
աշտիճանի վիճակեալ, անթիւ բազ-
մութիւն անձանց ընտրելոց ըն-
ծայէր Աստուծոյ. ուստի աղբեւր
շնորհաց հոգւոյն սրբոյ յայտնեցաւ
անդանօր բղխեալ առ 'ի նմանէ ։
Գրիգորիոս որ զօծումն քահանայա-

պետութեանն ոչ 'ի մարդկանէ և ոչ 'ի ձեռն մարդոյ , այլ 'ի վերին տեսչութենէն և 'ի հոգւոյն յայտնութենէ ըստ Պաւղոսի կոչեցեալ ընկալաւ . Գրիգորիոս որ 'ի մրցումն հոգեւորականն մարտին ձգնէր միանձնական վարուք ընդդէմ հակառակասէր Թշնամւոյն հանապազօր մեռանելով աշխարհի աղօթիւք և պահովք և զանազան առաքինութեամբք վասն սիրոյն Քրիստոսի . յաղագս որոյ սերովբէիցն կցորդեալ զերեքսրբեանն 'ի բարձունս մատուցանէ միշտ զօրհնութիւնս Աստուծոյ :

Եւ զի՞ եւս երկարապատում աբարից զբանս , քանզի յորժամ զմտաւ ածեմ զանհանդուրժելի տանջանս սրբոյն , զդողումն և սարսափումն ընդունի զմիտս իմ . զիա՛րդ մահկանացու գոլով բնութեամբ և եղծանելի , զայնչափ չարչարանս կրէր 'ի մարմնի . վասն զի Թէպէտ և ընկալեալն զտանջանս իւրաքանչիւր ոք 'ի սրբոցն առաջնոց , այլ փոքու ինչ ժամանակաւ և նուազունք :

Սղոցեցաւ Եսայիաս՝ այլ 'ի միում վայրկենի, գլխատեցաւ Յովհաննէս, այլ 'ի քթթելական, քարկոծեցաւ Ստեփաննոս, այլ առ ժամայն իսկ. խաչեցաւ Պետրոս, այլ արագ կատարմամբ, սպանաւ և Պաւղոս գլխատեալ, այլ 'ի նմին ժամու. չարչարեցան մարտիրոսքն պէսպէս հնարիւք, բայց ոչ ամենեքեան միով օրինակաւ, այլ զանազանապէս ըստ պատահման ժամանակին և հնարից բռնաւորացն: Իսկ սքանչելիս այս վկայ և հայր, անդր քան զմիտս և զխորհուրդս մարդկան վերամբառնայ հրաշիւք. վասն զի զամենայն տեսակս չարչարանաց զոր ամենեքեան ընկալան, իբրեւ յօտարի ուրուք մարմնի յանձն իւր բերէր քաջութեամբ. անգիտանայր ուրեմն ըզբնութեանն կիրս, ցանկայր ելանել 'ի մարմնոյն և լինել ընդ Քրիստոսի. ով աստուածասէր անձինն, ով քաջ նահատակին անփոխադրելի բարուցն, ով ջերմեռանդն հաւատոյն և առ Քրիստոս կատարեալ սիրոյն:

Սմա յօժարեսցուք նմանող լինել,

ով սիրելիք, ըստ Պաւղոսի թէ Նմա-
նողք իմ եղերուք, որպէս և ես
Քրիստոսի: Սմա հետեւեսցուք յօ-
թեւանն վերին ընդ առաքինու-
թեան ընթացից, անտես առնելով
ընդ նմին զկարծեցեալ պայծառու-
թիւնն, զանցաւոր վայելս և զա-
ժամանակեայ զփառս, անեղծելի
փառացն փափագեսցուք, անթա-
ռամ պսակին, անվախճան արքայ-
ութեան, հրեշտակացն պատուակցու-
թեան, Երրորդութեանն բնակցու-
թեան. գիտելով զի ոչ ունի ազգա-
ւոր կեանս այսորիկ բնաւորական
յինքեան բարութիւնս. բայց միայն
արտասուս, տառապանս, թշուա-
ռութիւնս, վիշտս, ցաւս, ախտա-
ժետութիւնս, նեղութիւն, անձ-
կութիւն, հիւանդութիւն, ծե-
րութիւն, մեղս ազգի ազգիս, և
մահ 'ի կատարածի. այսքան և սոյն-
պիսի դիւրավառանելի ծանուցեալ
զկենցաղս զայս երանելի հայրս մեր,
վասն որոյ նուիրեաց զանձն իւր
պատարագ Աստուծոյ, զհետ ըն-
թացեալ չարչարանօք խաչին Քրիս-

տօսի, գիտէր արդեւք ըստ մեծին Պաւղոսի թէ ոչ են արժանի չարչարանք յայժմեան ժամանակիս՝ հանդերձելոյ փառացն որ յայտնելոց են 'ի մեզ:

Այլ գիտեմ, ով սիրելիք, զի ցանկայ իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ կցորդ լինել չարչարանաց նորին, զի և պատրաստեալ պսակացն որ 'ի տեառնէ հաղորդ գտանիցի. բայց զի չեւ է ժամանակ մարտիրոսութեան, և ոչ են այժմ ընթացք յասպարիզի նահատակութեան, վհատիցի՞ք արդեւք: Սակայն մի՛ յապագս այսորիկ տրտմեսջիք անյուսութեամբ. զի թէպէտեւ նոցայն անձեռնարկելի է յայժմուս, այլ կրթեցէք զանձինս ըստ ժամանակիս նահատակութեան: Արհամարհեաց նա զբովանդակ կեանս, արհամարհեցէք և դուք զոնէ մասնաւորաբար զխրախութիւն սորա. մատնեաց նա զանձն հրոյ, շիջուցէք և դուք յանձանց զհուր ցանկութեան, եհեղ նա զարիւն, և դուք զարտասուս առաջի տեառն, ընդ

նմին և զաւելորդս գոյից 'ի ձեռս աղքատաց. կոխեաց նա զկայծակունս բոցոյն, շիջուցէք և դուք առ 'ի ձէնջ զբոց բարկութեան. Համբեր նա յետ բազում նեղութեանց՝ մահաշունչ գազանացն կենակցութեան 'ի խոր վիրապի անդ. Համբերեցէք և դուք փորձանաց աշխարհածուփ կենացս առանց կարճմտութեան. Մի՛ լքանիր 'ի խրատու տեառն, ուսուցանէ իմաստունն. և Դաւիթ երանէ զմարդ խրատեալ 'ի տեառնէ. ընդ այսորիկ և առաքելական բանն երանի տայ որք համբերեն փորձանաց, զի թէ ընտիր եւս գտանիցի, ասէ, առցէ զպսակն կենաց 'ի տեառնէ:

Ցնծեցէք և զհամբերութիւնն սորին յանդնդային վիրապի անդ, որքան դառնաբեր վշտօք առլցեալ էր: Բայց որովհետեւ զվտանգաւոր զայն տեղի յիշեցէք, պարտ է մեզ սակաւ ինչ բանիւք դեգերել անդանօր, եթէ հաճոյ թուիցի, և քննել մտօք թէ որպիսի՛ արդեւք լինէին սրբոյն կեանք 'ի մէջ այնչափ

մահուաբեր գազանացն բնակելով ,
որքան խորհուրդ բարեաց , և զինչ
գործ ։ Երթիցուք այսուհետեւ յառ֊
աջեսցուք հոգւոյ ակամբ առ երա֊
նելին , Թերեւս կարասցուք շահել
ինչ 'ի նմանէն , և իմանալ փոքր 'ի
շատէ զժուժկալութիւն նորա և
զանմարմնական վարսն , զանտանե֊
լի առաքինութիւնն , զանդադար
աղօթսն , զանհանգիստ տքնու֊
թիւնն , զանվախճան հսկումն ,
զանխափանելի հաւատսն , զանխզելի
յոյսն , զարտասուագոչ պաղա֊
տանսն , զանախտական մաղթանսն ,
զանկերակրելի անմարմնոց նմանեալ
կեանսն , քանզի անմարմնոյ արդա֊
րեւ երեւէր քաղաքավարութիւն
արդարոյն , անվաստակելի սեղանն ,
առանց երկոց կերակուրն , յոյժ
ախորժական եւս էր նմա և անա֊
պատական լռութիւնն , որպէս փա֊
փագէր պարապել միշտ երկնային
տեսութեանցն , ստանալ Թեւս իբ֊
րեւ զաղաւնւոյ և հեռանալ դադա֊
րել յանապատի ։ Տրտմութիւն ոչ
էր նորա այլ ինչ , քան եթէ ան֊

կատար մնալ յասպարիզի անդ նա-
հաստատակութեան . սակայն բովան-
դակ նորայն կեանք հանդէս էր մը-
կայութեան , հանապազօր պատե-
րազմելով ընդ պետութիւնս և ընդ
իշխանութիւնս աշխարհակալի խա-
ւարիս , նման արդարեւ աշխարհ 'ի
խաչ ելեալ էր , և նա աշխարհի ըստ
առաքելոյ , 'ի ջանս և 'ի վաստակս ,
'ի քաղց և 'ի ծարաւ , 'ի պահս և 'ի
աղքատութիւն , 'ի ցուրտ և 'ի մերկու-
թիւն ։

Այլ ո՞վ բաւական իցէ բանիւ
պատմել զանտանելի ճգնութիւն
երանելւոյն , կամ օրինակաւ ցու-
ցանել զանհանդուրժելի նեղու-
թիւն նորա , որ 'ի մէջ իժից և քար-
բից ունէր զբնակութիւնն , ուր ոչ
խոտակից ոք մերձ , ոչ վշտակից , ոչ
բարեկամ , ոչ օգնական , ոչ սփո-
փիչ , ոչ սպասաւոր . այլ տեւէր
մեծաւ ժուժկալութեամբ իբրեւ
կենդանւոյն եդեալ 'ի գերեզմա-
նի , անյարկ , անծածկոյթ , զայն-
չափ ժամանակս 'ի գիշերի և 'ի
տուընջեան , 'ի տապոյ ամարայնւոյ

և սառնամանեաց ձմերանւոյն • քանզի սաստուածամուխ էր այրն , ամենիմաստ գիտութեամբ հոգւոյն շնորհաց առլցեալ միտացն աչօք պայծառագոյն , հոգւովն մաքրեալ , յաշխարհական զբաղմանց հեռացեալ , զհանդերձեալսն միայն նկատէր , զապագայսն առաջի աչաց տեսանէր , խրախուսէր տէրունական խրատուն , զօրանայր աստուածեղէն բանիւն • Յաշխարհի , ասէ , նեղութիւն ունիցիք , այլ քաջալերեցարուք զի ես յաղթեցի աշխարհի : Յիշէր ուրեմն և զառաքելականն բան զի թէ և Արտաքին մարդս մեր ապականի , ասէ , այլ ներքինն նորոգի օր ըստ օրէ , զի այժմու յաճախութիւնն նեղութեանս , զյաւիտենական փառսն գործէ 'ի մեզ : Սաղմոսէր և ընդ Դաւթայ • Համբերելով համբերի տեառն և լուաւ աղօթից իմոց , հան զիս 'ի գբոյ տառապանաց 'ի կաւոյ և 'ի տղմոյ • և թէ Ե՞րբ եկից երեւեցայց երեսացդ Աստուծոյ , քանզի խանդակաթ սիրով եմ ես , ցոյց ինձ

տանէ զերեսս քո, և լսելի արա ինձ զձայն քո, զի ձայն քո քաղցր է և տեսութիւն քո գեղեցիկ. զհետ հոտոյ իւղոց քոց ընթացայց: Այսպիսի ուրեմն բարբառէր հանապազ, այսպիսի աղօթիւք պաղատէր երանելին Գրիգոր, յայսպիսի մաղթանս խոնարհեցուցանէր զամենազօրն գթութիւնն Աստուծոյ, մինչեւ յայց ել հովիւն քաջ մոլորեալ հօտի իւրոյ, այն որ կամի զամենայն մարդիկ զի կեցցեն և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն ամենեքեան, և այցելութեանն օրինակ էր այսպիսի:

Կոյս ոմն գեղեցկութեամբ հրաշալեաւ Հռիփսիմէ անուն, յարեւմտից արեգակն ծագեալ արեւելեան աշխարհին հանդերձ լուսափայլ աստեղօքն որ ընդ նմա, կուսանաց վայելչութեն, մարտիրոսաց պարծանքն, հրեշտակաց զուարճացուցիչն, դիւաց ահարկուն, երկնաւոր փեսային հարսնացեալն, Այ ինքնանուէր ընծայն, սրբութեան սիրողն, ամենամաքուր խորհուրդն,

առաքինասէր հոգւին, արիական
պատերազմողն, հակառակամար-
տիցն յաղթողն, պայծառագոյն շա-
ռաւեղն, քաջատոհմիկ ոստն, պըտ-
ղաբեր ձիթենին, նախանձելի վար-
քըն, պարկեշտութեան օրինակն, ա-
րեւմտից նորաբոյս ծաղիկն, արեւե-
լից զարդարիչն, վայելչագեղ տիպն,
աստուածատեսակագոյն միտքն, ա-
դամանդեայ պնդութիւնն, որ զան-
բաւ զօրութիւն սկայազին բռնա-
ւորին 'ի պարտութիւն դարձուցա-
նէր իբրեւ զտղայ, վասն որոյ երգէ
աստուածայինն Դաւիթ. Ամենայն
փառք դստեր Թագաւորի 'ի ներ-
քուստ և վերջաւորս յոսկեհուռն
պաճուճեալ: Զի՞ ոչ և վասն իմաս-
տախոհ նորուն դայեկի Գայիանէ
ասասցից, ողջախոհութեանց մօրն,
աստուածահաճոյ դաստիարակին,
ամենիմաստ ուսուցչին, պնդագոյն
հոգւոյն, անփոփոխադրելի խրատուն,
որ ոչ յաղթէր 'ի փաղաքշական
պատրանաց բռնաւորին, այլ շուրջ
փարէր, պաղատէր բանիւք, մար-
զէր առ 'ի յաղթութիւն. զօրանալ

քաջալերէր · Ո՛վ գեղեցկիկդ ինձ, ասելով, անցաւ է կենցաղս, աստուերք են խաւարացեալք, ունայնութիւն են պատրանքն, ժուժկալեա փոքր մնա եւս, զօրացիր 'ի սէրն Աստուծոյ, բարիոք է անձամբ փեսային հարսնանալ, լաւագոյն ընդ իմաստուն կուսանսն մտանել յառագաստն երկնային : Այսպիսի խանդաղատական բանիւք յորդորէ զկոյսն անխոնարհելի զմտացն դիտաւորութիւն ունելով առ Աստուած մինչեւ ցկատարումն · որովք արիաբար ճգնութեամբ եւ վկայական հանդիսիւ կատարէին ամենեքեան 'ի Քրիստոս :

Եւ զինչ յետ այսորիկ · պատուհասեալ լինէր բանաւորն հանդերձ զօրօք գժնդակագոյն հարուածովք, քանզի փոփոխեալ լինելով 'ի մարդկային բնութենէն 'ի կերպարանս խոզի՝ որպէս երբեմն արքայն Ասորեստանեայց 'ի ձեռն Դանիելի, ոչ օրինակաւ, այլ արդեամբք, ոչ առասպելով, այլ ճշմարտութեամբ, զազրալի տեսլեամբ, ողորմելի կերպարանաւ, յանդուգն ժպիրհ, դի-

ւական, մոլեկանաց նմանեալ, իբ-
րեւ զկինճ վայրենի յանտառի բնա-
կելով որպէս զնոսա 'ի մէջ նոցին,
արդարեւ 'ի պատուի էր և ոչ իմա-
ցաւ այլ հաւասարեաց անասնոց
անմտից ։ Այսպէս պատուհասէ Աս-
տուած որք հակառակ նմին յան-
դգնին, այսպիսի հարուածովք խայ-
տառակէ զանհնազանդսն պատուի-
րանաց իւրոց ։

Այժմ ո՞ւր է քո Թագաւորա-
կան բարձրայօնութիւն, ո՞ւր հպար-
տութիւն, ո՞ւր խորոխտալի ամբար-
հաւաճութիւնն, ո՞ւր գերապատիւ
աթոռն, ո՞ւր Թագն արքայական,
ո՞ւր ոսկեհուռն բազմականքն, ո՞ւր
սքանչելի զօրութիւն, ո՞ւր անյաղ-
թելի քաջութիւնն, ո՞ւր զօրավարքն
հզօրք, ո՞ւր պետքն բռնաւորք, ո՞ւր
ատենական նախարարքն, ո՞ւր 'փա-
ղաքուշքն և կատակերգք, ո՞ւր դա-
տողական բեմն, ո՞ւր տանջողական
ատեանն, ո՞ւր դահիճքն փութա-
ցեալք, ո՞ւր չարահնար մեքենայքն.
ո՞ւր են և դիքն ձեր յոր յուսացեալ
էիք դուք 'ի նոսա, յարիցեն արդ-

եղիցին ձեզ Թիկունք, ընդէ՞ր ոմն յի-
մարեալքդ ոչ լուայք մարգարէին
զոր ասաց 'ի դիմաց Աստուծոյ.
Տեսէք տեսէք թէ ես եմ. և ոչ է
այլ Աստուած բայց յինէն որ սպա-
նանեմ և կեցուցանեմ. հարկանեմ
և բժշկեմ. եթէ ոչ խրատեցայք
յառաջագոյն բանիւ, խրատեսջիք
այժմ 'ի ձեռն պատուհասի հա-
րուածոցդ: Բայց զինչ առաւել
քան զայս ներգործիւր առ արքային
Նաբուքոդոնոսորայ. ո՞չ ապաքէն
և զնա իսկ խրատէր մարգարէն Դա-
նիէլ, և պատուիրէր յառաջագոյն,
սակայն իբրև իժի և քարբի խը-
ցեալ զականջս իւր ոչ լսէր զձայն
Թովչի Ճարտարի, և ոչ ընդունէր
զդեղ 'ի դեղատուէն իմաստնոյ,
մինչև արդեամբք իսկ ընկալաւ ըզ-
բան նախասացեալ պատուհասին:
Նմանապէս և աստանօր պատահե-
ցին առ. սոսա 'ի ձեռն մեծի վկային
Աստուծոյ, զի որք ոչ տեսին զարեւ
'ի խրատուէ աստուածային բանից
նորա, անարգ եղեն որպէս ջուր զի
հեղու, և 'ի լարել աղեղան հզօրին

տկարացան. վասն որոյ ուրախ լինէր արդարն 'ի տեսանելն զհատուցումն:

Եւ նորա այնուհետեւ զղջացեալ խնդրէին զտէրն, յորժամ սպանանէր զնոսա, դառնային և առաւօտ առնէին առ Աստուած, զի ծանեան աստուածասաստ գոլ զպատուհասն, անբժշկելի զհարուածսն, անյուսալի զախտն, որով ընկալեալ 'ի խորս տարակուսութեան յայնժամ յիշէին զԱստուած և զքաջ նահատակ նորա զԳրիգորիոս: Զո՞ր արդեւք. զկալանաւորն, զբանդեալն, զաղքատն, զանազգին, զանյարկն, զբազմավիշտն, զմահապարտեալն, զկենդանւոյն թաղեալն, զնա խնդրէին հաւատով, 'ի ձեռն նորա յուսային բուժիլ յանբժշկական ախտիցն, և 'ի խնդիր ելանելով սրբոյն, ոչ մարդկային ինչ յուսով, այլ յայտնութեամբ տեսլեանն որ երեւեցաւ քեռ թագաւորին: Եւ յիրաւի ուրեմն, քանզի զիա՛րդ յուսային յետ այնչափ ժամանակաց կենալ նմա յայնպիսի ան-

բանաւորկուն մեծաւ ժուժկալութեամբ ընթացրեալ կործանեցեր. արի որ յասպարիսի ընթացիցն արիաբար նահատակեցար ընդդէմ թշնամւոյն. արի որ զսկզբնաչարն Բելիար զգետնեալ ընդ ոտիւք մեռուցեր. արի հաստատեալ սիւնդ եկեղեցւոյ իմոյ և պարծանք տիեզերաց. արի ուսուցիչդ ուղղափառութեան և գեղեցկութիւնդ աշխարհի. արի քարոզդ հաւատոյ և առաջնորդ մարդկան 'ի ճանապարհս արքայութեան. արի և զօրացիր, արի և պնդեա արիաբար զմէջ քո. ոչ ընկղմեցար բազմահոս ալեօքն, զարթիր և սթափեաց, զի ահա նորոգեսցի իբրեւ զարծուոյ մանկութիւն քո. արի և քարոզեա զաւետարանն իմ, յաղագս որոյ բազում համբերեցեր կրից չարչարանաց: Արի և զուարճացիր, զի արարից զքեզ յազգ մեծ որպէս կանխաւ զԱբրահամ. արի և ընկալ զպտուղ վաստակոցն քոց, վասն այնորիկ երկարեցի զմէշան յոգնազան տանջանաց քոց զի հայր ազգաց

կատար մնալ յառաջադիմել անդ նահատակութեան . սակայն բազմանգանկ նորայն կեանք հանդէս էր վըկայութեան, համապատաղօր պատերազմելով ընդ պետութիւնս և ընդ իշխանութիւնս աշխարհակալի խաւարիս, նմա արդարեւ աշխարհ 'ի խաչ ելեալ էր, և նա աշխարհի ըստ առաքելոյն, 'ի ջանս և 'ի վաստակս, 'ի քաղցս և 'ի ծարաւ, 'ի պահս և 'ի տքնութիւն, 'ի ցուրտ և 'ի մերկութիւն :

Այլ մեզ բաւական իցէ բանիւ պատմել զանհատանելի ձգնութիւն երանելւոյն, կամ օրինակաւ ցուցանել զանհանգուրժելի նեղութիւն նորա, որ 'ի մէջ իժից և քարբից ունէր զբնակութիւնն, ուր ոչ խոսակից ոք մերձ, ոչ վշտակից, ոչ բարեկամ, ոչ օգնական, ոչ մխիթարիչ, ոչ սպասաւոր . այլ տեւէր մեծաւ ժուժկալութեամբ իբրեւ կենդանւոյն եդեալ 'ի գերեզմանի, անյարկ, անծածկոյթ, զայնչափ ժամանակս 'ի գիշերի և 'ի տունջեան, 'ի տապոյ ամառնւոյ

և ստանամանեաց ձմերանւոյն. քանզի աստուածամուխ էր այրն, ամենիմաստ գիտութեամբ հոգւոյն շնորհաց առլցեալ մտացն աչօք պայծառագոյն, հոգւովն մաքրեալ, յաշխարհական զբաղանաց հեռացեալ, զհանդերձեալսն միայն նկատէր, զապագայսն առաջի աչաց տեսանէր, խրախուսէր տէրունական խրատուն, զօրանայր աստուածեղէն բանիւն. Յաշխարհի, ասէ, նեղութիւն ունիցիք, այլ քաջալերեցարուք զի ես յաղթեցի աշխարհի: Յիշէր ուրեմն և զառաքելականն բան զի թէ և Արտաքին մարդս մեր ապականի, ասէ, այլ ներքինն նորոգի օր ըստ օրէ, զի այժմու յաճախութիւնն նեղութեանս, զյաւիտենական փառսն գործէ 'ի մեզ: Սաղմոսէր և ընդ Դաւթայ. Համբերելով համբերի տեառն և լուաւ աղօթից իմոց, հան զիս 'ի գբոյ տառապանաց 'ի կաւոյ և 'ի տղմոյ. և թէ Ե՞րբ եկից երեւեցայց երեսացդ Աստուծոյ, քանզի խանդակաթ սիրով եմ ես, ցոյց ինձ

տաէ զերեսս քո, և լսելի արա ինձ զձայն քո, զի ձայն քո քաղցր է և տեսութիւն քո գեղեցիկ, զհետ հոտոյ իւղոց քոց ընթացայց: Այսպիսի ուրեմն բարբառէր հանապազ, այսպիսի աղօթիւք պաղատէր երանելին Գրիգոր, յայսպիսի մաղթանս խոնարհեցուցանէր զամենողորմ գթութիւնն Աստուծոյ, մինչեւ յայց ել հոգին քաջ մոլորեալ հօտի իւրոյ, այն որ կամի զամենայն մարդիկ զի կեցցեն և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն ամենեքեան, և այցելութեանն օրինակ էր այսպիսի:

Կոյս ոմն գեղեցկութեամբ հռչակեալ Հռիփսիմէ անուն, յարեւմտից արեգական ծագեալ արեւելեան աշխարհին հանդերձ լուսափայլ աստեղօքն որ ընդ նմա, կուսանաց վայելչութիւն, մարտիրոսաց պարծանքն, հրեշտակաց զուարճացուցիչն, դիւաց ահարկուն, երկնաւոր փեսային հարսնացեալն, Այ ինքնանուէր ընծայն, սրբութեան սիրողն, ամենամաքուր խորհուրդն,

առաքինասէր հոգին , արիական պատերազմողն , հակառակամարտիցն յաղթողն , պայծառագոյն շառաւեղն , քաջատոհմիկ ոստն , պըտղաբեր ձիթենին , նախանձելի մարքըն , պարկեշտութեան օրինակն , արեւմտից նորաբոյս ծաղիկն , արեւելից զարդարիչն , վայելչագեղ տիպն , աստուածատեսակագոյն միտքն , ադամանդեայ պնդութիւնն , որ զանբաւ զօրութիւն սկայազին բռնաւորին 'ի պարտութիւն դարձուցանէր իբրեւ զտղայ , վասն որոյ երգէ աստուածայինն Դաւիթ . Ամենայն փառք դստեր Թագաւորի 'ի ներքուստ և մերձաւորս յոսկեհուռն պաճուճեալ : Զի՞ ոչ և վասն իմաստախոհ նորուն դայեկի Գայիանէ ասասցից , ողջախոհութեանց մօրն , աստուածահաճոյ դաստիարակին , ամենիմաստ ուսուցչին , պնդագոյն հովւոյն , անփոխադրելի խրատուն , որ ոչ յաղթէր 'ի փաղաքշական պատրանաց բռնաւորին , այլ շուրջ փարէր , պագանէր բանիւք , մարզէր առ 'ի յաղթութիւն . զօրանալ

քաղցրաբերէր. Ո՛վ գեղեցկիկդ ինձ, ասելով, անոյշ է կենցաղս, առաւելքը են խոստացեալքդ, ունայնութեն են պատրանքն, ժուժկալեա փոքր մի եւս եւս, զօրացիր 'ի սէրն Աստուծոյ, բարիոք է անմահ փեսային հարսնանալ, լաւագոյն ընդ իմաստուն կուսանսն մտանել յառագաստն երկնային: Այսպիսի խանդաղատական բանիւք յորդորէ զկոյսն անխոնարհելի զմտացն գիտաւորութիւն ունելով առ Աստուած մինչեւ ցկատարումն. որովք արիաբար ճգնութեամբ և վկայական հանդիսիւ կատարէին ամենեքեան 'ի Քրիստոս:

Եւ զինչ յետ այսորիկ. պատուհասեալ լինէր բռնաւորն հանդերձ զօրօք գժնդակագոյն հարուածովք, քանզի փոփոխեալ լինելով'ի մարդկային բնութենէն 'ի կերպարանս խոզի՝ որպէս երբեմն արքայն Ասորեստանեայց 'ի ձեռն Դանիելի, ոչ օրինակաւ, այլ արդեամբք, ոչ առասպելով, այլ ճշմարտութեամբ, զարմանալի անալեամբ, ողորմելի կերպարանաւ, յանդուգն ժայռից, զի

ւական, մոլեկանաց նմանեալ, իբրեւ զկինճ վայրենի յանտառի ընակելով որպէս զնոսա 'ի մէջ նոցին, արդարեւ 'ի պատուի էր և ոչ իմացաւ այլ հաւասարեաց անասնոց անմտից: Այսպէս պատուհասէ Աստուած որք հակառակ նմին յանդգնին, այսպիսի հարուածովք խայտառակէ զանհնազանդսն պատուիրանաց իւրոց:

Այժմ ո՞ւր է քո թագաւորական բարձրայօնութիւն, ո՞ւր հպարտութիւն, ո՞ւր խրոխտալի ամբարհաւաճութիւնն, ո՞ւր գերապատիւ աթոռն, ո՞ւր թագն արքայական, ո՞ւր ոսկեհուռն բազմականքն, ո՞ւր սքանչելի զօրութիւն, ո՞ւր անյաղթելի քաջութիւնն, ո՞ւր զօրավարքն հզօրք, ո՞ւր պետքն բռնաւորք, ո՞ւր ատենական նախարարքն, ո՞ւր 'փաղաքուշքն և կատակերգք, ո՞ւր դատողական բեմն, ո՞ւր տանջողական ատեանն, ո՞ւր գահիճքն փութացեալք, ո՞ւր չարաչնար մեքենայքն. ո՞ւր են և գիրքն ձեր յոր յուսացեալ էիք դուք 'ի նոսա, յարիցեն արդ

եղիցին ձեզ թիկունք, ընդէ՞ր ո՛վ յի-
մարեալքդ ոչ լուայք մարգարէին
զոր ասաց 'ի դիմացն Աստուծոյ.
Տեսէք տեսէք թէ ես եմ, և ոչ է
այլ Աստուած բայց յինէն որ սպա-
նանեմ և կեցուցանեմ, հարկանեմ
և բժշկեմ. եթէ ոչ խրատեցայք
յառաջագոյն բանիւ, խրատեսջիք
այժմ 'ի ձեռն պատուհասի հա-
րուածոցդ: Բայց զինչ առաւել
քան զայս ներգործիւր առ արքային
Նաբուքոդոնոսորայ. ո՞չ ապաքէն
և զնա իսկ խրատէր մարգարէն Դա-
նիէլ, և պատուիրէր յառաջագոյն,
սակայն իբրև իժի և քարբի խը-
ցեալ զականջս իւր ոչ լսէր զձայն
թովչի ճարտարի, և ոչ ընդունէր
զդեղ 'ի գեղատուէն իմաստնոյ,
մինչև արդեամբք իսկ ընկալաւ ըղ-
բանն նախասացեալ պատուհասին:
Նմանապէս և աստանօր պատահե-
ցին առ. սոսա 'ի ձեռն մեծի վկային
Աստուծոյ, զի որք ոչ տեսին զարեւ
'ի խրատուէ աստուածային բանից
նորա, անարգ եղեն որպէս ջուր զի
հեղու, և 'ի լարել աղեղան հզօրին

տկարացան. վասն որոյ ուրախ լինէր արդարն 'ի տեսանելն զհատուցումն։

Եւ նոքա այնուհետեւ զղջացեալ խնդրէին զտէրն, յորժամ սպանանէր զնոսա, դառնային և առաւօտ առնէին առ Աստուած, զի ծանեան աստուածասաստ գոլ զպատուհասն, անբժշկելի զհարուածսն, անյուսալի զախտն, որով ընկալեալ 'ի խորս տարակուսութեան յայնժամ յիշէին զԱստուած և զքաջ նահատակ նորա զԳրիգորիոս։ Զո՞ր արդեւք. զկալանաւորն, զբանդեալն, զաղքատն, զանազգին, զանյարկն, զբազմավիշտն, զմահապարտեալն, զկենդանուոյն թաղեալն, զնա խնդրէին հաւատով, 'ի ձեռն նորա յուսային բուժիլ յանբժշկական ախտիցն, և 'ի խնդիր ելանելով սրբոյն, ոչ մարդկային ինչ յուսով, այլ յայտնութեամբ տեսլեանն որ երեւեցաւ քեռ թագաւորին։ Եւ յիրաւի ուրեմն, քանզի զիարդ յուսային յետ այնչափ ժամանակաց կեալ նմա յայնպիսի ան-

բանսարկուն մեծաւ ժուժկալու-
թեամբ ընթադրեալ կործանեցեր. արի որ յասպարիսի ընթացիցն ա-
րիաբար նահատակեցար ընդդէմ թշնամւոյն. արի որ զսկզբնաչարն
Բելիար զգետնեալ ընդ ոտիւք մե-
րուցեր. արի հաստատեալ սիւնդ եկեղեցւոյ իմոյ և պարծանք տիե-
զերաց. արի ուսուցիչդ ուղղափա-
ռութեան և գեղեցկութիւնդ աշ-
խարհի. արի քարոզդ հաւատոյ և առաջնորդդ մարդկան 'ի ճանա-
պարհս արքայութեան. արի և զօ-
րացիր, արի և պնդեա արիաբար զմէջ քո. ոչ ընկղմեցար բազմահոս ալեօքն, զարթիր և սթափեաց, զի ահա նորոգեացի երբեմն զարծուոյ մանկութիւն քո. արի և քարոզեա զաւետարանն իմ, յազգազս որոյ բա-
զում համբերեցեր կրից չարչարա-
նաց: Արի և զուարճացիր, զի ա-
ռաքեց զքեզ յազգ մեծ որպէս կան-
խաւ զԱբրահամ. արի և ընկալ զպտուղ վաստակոցն քոց, վասն այնորիկ երկարեցի զվէշտն յոգնա-
զան տանջանաց քոց զի հայր ազգաց

բազմաց արարեց զքեզ, զի բազմա-
ցուցից զզաւակ քո իբրեւ զաստեղս
երկնից եւ իբրեւ զաւազ ծովու. Մի՛
համարիցիս այլազգ արարեալ առ
քեզ յայտնութիւն, բայց զի ար-
դար երեւեսցիս, զի փառաւորես-
ցիս, զի երեւելի հրեշտակացն եւ
մարդկան եղիցիս: Գոյր հնար պատ-
կեր զքեզ միայն յընթացս աստղա-
րիսին, սակայն բազմաց վտանգութեան
իւրքն լինէր, յաղագս այսորիկ եր-
կայնամտեցի 'ի նեղութեանցն քոց,
զի բարձրագոյն փառաց արժանա-
ցուցից զքեզ, զի յեւս առաւելու-
թիւն պատուոյ եւ աշխարհանի բարձ-
րացուցից. ընկալար զպսակ նահա-
տակութեան, ընկալցիս եւ այժմ
զաթոռ հայրապետութեան. բարձ-
րացար կառօք առաքինութեամբ
ընդ Եղիայի, ընկալ եւ այժմ զշնորհ
նախատեսութեան նորա. Ճգնեցար
ընդ Յովհաննու 'ի գժնդակագոյնդ
յանապատի, գոչեա եւ դու ընդ
նմա զձայն բարբառոյն յանապա-
տի. արժանեցար 'ի բանդի կա-
պանաց ընդ Պաւղոսի, ընկալ ընդ

նմա և զանարգել քաղցրութիւն բանի իմոյ ընդ տիեզերս. Պետրոս զփականս արքայութեան էառ յինէն, ա՛ռ և դու զնոյն իշխանութիւն կապել և արձակել 'ի յերկինս և 'ի յերկրի. առաքեալքն իմ երկոտասան 'ի վերայ ինքեանց բաժանեցին վիճակաւ զընդհանուր աշխարհս, իսկ դու միայն ընդ համասփիւռս վիճակաւ քարոզեսցես զաւետարանն իմ. վասն որոյ ընկալեալ զանուն մարդեղութեան ի՛մոյ արեգակն արդարութեան կոչեսցիր տիեզերաց:

Յայնժամ վազէր կաղն իբրեւ զեղջերու, և պարզ լինէր լեզու ծանրախօսին. ոչ յապաղէր, ոչ յերկուանայր, այլ վաղվաղակի ընթանայր 'ի կոչումն տէրունական, քանզի գիտէր զզօրութիւն կոչողին յառաջագոյն, հաւատայր Աստուծոյ և համարէր նմա արդարութիւն, զուարճանայր ցնծութեամբ, հրճուէր հոգեւորապէս, կաքաւէր խորհրդաբար, աղաղակէր 'ի ձայն ցնծութեան առ Աստուած ասելով.

Այսօր է զոր արար տէր, եկայք ցնծասցուք և ուրախասցուք 'ի սմա :

Յայնժամ և բանաւորին եղեալ 'ի միջոյ գաղղիացւոց ընդ առաջ ընթանայր նմա, որ երբեմն թագաւոր այժմ խոզ անտառաւ, գործելի աւելեամբ, զաղղիադրոյն կերպարանօք, կատաղի մոլութեամբ, հանդերձ այսատանեալ բազմութեամբն, փրփրելով և զանձինս ցանելով, առ ասս սրբոյն անկանէր, շուրջ փարէր զնովաւ, աղերսէր զողորմութիւնն կերպարանաւ, ձեւացուցանէր ըղհայցուածն. մինչեւ անկեալ նահատակին Քրիստոսի 'ի վերայ երեսաց իւրոց, երկիր պագանէր տեառն Աստուծոյ, և աղբերս արտասուաց հեղլով յաչաց գոհանալով զտեառնէ, բերկրեալ սրտիւ ասելով. Ըստ բազում ցաւոց սրտի իմոյ մխիթարութիւնք քո ուրախ արարին զանձն իմ, և ոչ խօսեսցի զզօրութիւն քո Տէր, որ դարձուցեր զզէնն 'ի վանակս Ջուրց և զապստամբն յաղթեցակունս. զի ահա և այժմ զկարծրութիւն սրտից ժողովրդեանս այսա-

րին կակղացուցեր հրով բարկու֊
թեամբ քով իբրեւ զմոմ, և'ի սանձս
և'ի դանդաղանաւանդս. Ճմլեալ զխը֊
ղճս նոցա դարձուցեր առ քեզ
տէր. կարող ես և'ի քարանց յա֊
րուցանել որդիս Աբրահամու, վասն
որոյ աղաչեմ զանբաւ մարդասի֊
րութիւն քո տէր իմ Յիսուս Քրիստոս,
միածին որդի և բան մշտենջենաւո֊
րին հօր, արարիչ ամենայնի և տէր
բոլորից, որ բարձրանալով քո 'ի
խաչին կապեցեր զհզօրն, և մեզ կա֊
պելոցս ազատութիւն յաւիտենա֊
կան շնորհեցեր, գթա և այժմ 'ի
ստեղծուածս ձեռաց քոց, և առա֊
քեա զզօրութիւն բազկի քո, և ա֊
զատեա զժողովուրդս զայս 'ի ծա֊
ռայութենէ բանսարկուին, ցուցա֊
նելով յայտնապէս թէ դու միայն
ես Աստուած կենդանի և մշտնջե֊
նաւոր, և թագաւոր անմահ, հզօր
և յաւիտենական. արդ բժշկեա զսո֊
սա տէր 'ի բարկութենէ հարուա֊
ծոց քոց նայեցեալ 'ի խոնարհու֊
թիւն ծառայիս քո, և ինձ շնորհեա
բան իմաստութեան, զի քով զօրու֊

Թեամբք կարացից մեկնել զսոսա 'ի ծառայութենէ գրեաց, և ընծայել քեզ անուան Աստուծոյ ժողովուրդ-սեպհական։

Եւ նայեցեալ աէր յաղաչանս որբոյն, շնորհեաց ամենեցուն առա-ժամայն զբուժումն 'ի գիւական ախտից, և զմարդկապէսն մտաւո-րութիւն և զխօսս Թագաւորին, և եկեալ վաղվաղակի նոքօք հանդերձ, խնդրէր ուսանել զնշխարս վկայիցն Աստուծոյ. և ուսեալ հաւաքէր խնդութեամբ, և մեծաւ պատուով ամփոփէր զգանձն պատուականս 'ի հնձանայարկս նոցունց. ուր և ինքեան վանս կալեալ, բազմամբոխ ժողովրդեամբն, և Թագաւորաւն, սկսանէր ուսուցանել զնոսա 'ի սկզբանց արարչութեանց անտի մինչեւ ցկատարումն յաւիտենից, զոր ոչ է մեզ կարելի ասել մի ըստ միոջէ. քանզի յոյժ իմաստուն էր այրն հոգեւորական գիտութեամբ լի շնորհօք աստուածային. բայց Թե-րեւս ծանուցանէր զանմեղութիւնն Աստուծոյ և զարարածոց ամենայն

զեղեղութիւն, զգոյացութիւն մար-դոյն, զշնորհին պարգեւ, զանձնիշ-խան կամքս, զփափկութիւն դրախ-տին, զթագաւորելն ամենայնի որ 'ի ներքոյ երկնից, զբանսարկուին նա-խանձ, զդաւաճանութիւն կնոջն, զյանցանելն զպատուիրանաւ, զար-տաքսմանելն 'ի ցանկալի վայելչու-թենէ հայրենեացն, զմահուամբ դատապարտութիւնն, զյաճախու-թիւնն յետ այնր 'ի մեղս, զօտարա-նալն յԱստուծոյ, զնուազել աս-տուածպաշտութեանն, զՋրհե-ղեղաւն կործանումն, զընտիր միայն զաւանելն Նոյի, զաշտարակին զշի-նութիւն եւ կործանումն, զբազմաս-տուածութիւնն գիւաց, զյաճա-խել կռապաշտութեանն ընդ տիե-զերս, զհաւատալն Աբրահամու, զծառայութիւնն Իսրայելի, զհա-րուածսն Եգիպտոսի, զխստանալն Փարաւոնի, զբաժանումն ծո-վուն, զանցանել ժողովրդեանն, զընկղմելն Փարաւոնի եւ զօրացն, զյանապատին սքանչելիքս, զմովսի-սական քարոզն, զգրաւորական օ-

րենքն , զառ 'ի յերկիրն աւետեաց փոփոխումն՝ զմարգարէիցն զգուշակութիւն , զգալուստն Քրիստոսի , զանօրինական խորհուրդն , ըզխաչելն որ վասն մեր , զմեռանելն ստուգապէս , զթաղելն 'ի գերեզմանի , զյառնելն յերրորդ աւուր , զփրկելն զմեզ 'ի սատանայէ , զյաղթելն մահու զօրութեանն , զվերանալն առ հայր յերկինս , զիջանելն Հոգւոյն սրբոյ 'ի վերնատունն , զաճումն աստուածպաշտութեանն , զառաքելական քարոզութիւնն , ըզմիւսանգամ գալուստն հայրենի փառօք , զյարութիւնն ամենայն տիեզերաց , և զհամառօտ վճիռ դատաստանին յաւիտենից : Այսոքիւք ամենեքումբք յաճախագոյն գիտութեամբ և առաւել վարդապետութեամբ ըստ ժամանակին պիտոյիցն վկայութեամբք և օրինակօք յաստուածաշունչ գրոց հաստատէր ըզնոսա :

Յետ այսր դարձեալ աղաչանք մաղթանաց հարուածելոցն առ երանելին , և նորուն պաղատանք փա-

ընկլեք առ տէր վասն բժշկութեան
նոցա , որով ոչ յապաղմամբ ընկա_
լան զհայցելին : Քանզի բառնայր
վաղվաղակի 'ի ձեռն աղօթից նորա
հարուածք պատուհասին յամենե_
ցուն , և կնքելով զթագաւորն այրն
Աստուծոյ նշանաւ խաչին , թօթա_
փէր նոյնժամայն զզգեստ խաւարայ_
ին , մերկանայր և զկերպարանս ա_
նասնեղէն զոր զգեցաւ յաղագս մե_
ղացն դատապարտեալ , և զգենոյր
զառաջին կերպարանացն զվայել_
չութիւն , նա եւս զարմանագոյն և
հրաշալի : Ո՛վ մեծագունի իրին ,
ո՛վ անտանելի հրաշիցն . արդարեւ
ո՛վ խօսեսցի զզօրութիւն քո տէր ,
կամ ընդ թուով համարիցի զսքան_
չելիս քո . զի ո՛վ ոք ետես կամ
լուաւ զայնքան դժնդակագոյն հա_
րուածք 'ի միում վայրկենի ժամու
բժշկելով . Ճշմարտապէս զկամս
երկիւղածաց իւրոց առնէ տէր և
աղօթից նոցա լսէ : Բայց երա_
նելին ոչ անձին , այլ Աստուծոյ
ընծայէր փառաւորութիւն ասելով .
Այս փոփոխումն աջոյն բարձրե_

լոյ, և թէ Աջ տեառն արար զօրութիւն:

Յայնժամ ապա և Թագաւորին Տրդատիոս, քանզի այս էր անուն արքային, զերմեռանդն հաւատով և մեծագոյն ձայնիւ խոստովանէր զանէր մեր Յիսուս Քրիստոս Աստուած ճշմարիտ և բան Հօր, արարիչ բոլորից արարածոց երևելեաց և աներևութից, Աստուած քարոզէր զխաչելեալն, և երկրպագէր կենդանարար աստուածընկալ սուրբ խաչին. հրաժարէր յայտնապէս 'ի դիւապաշտ ամբարշտութենէն, զօրավիգն մեծ և օգնական և վրէժխնդիր ուղղափառութեան այնուհետև լինէր հաւատոյս, որպէս և Պաւղոս յետ երևմանն Քրիստոսի և կուրութեան աչացն 'ի ճանապարհին Դամասկեայ, այլ և գործովք զասացեալն 'ի Պաւղոսէ ցուցանէր յանձն, թէ Որ առաւել եղէն մեղքն, եւս առաւելան շնորհք բարեպաշտութեան 'ի Քրիստոս Յիսուս: Նա և բազմութիւն զօրաց ժողովրդեանն 'ի շնորհաց հոգւոյն

որբոյ շարժեալք մի բարբառ եղեալք ընդ արքային գուչէին մեծաձայնապէս . Մեծ ես դու տէր և հզօր , և սքանչելի են գործք քո , վասն որոյ հաւատամք յամենասուրբ երրորդութիւնդ և մի աստուածութիւն , որպէս լուաք և ուսաք 'ի մերոյ լուսաւորչիս վարդապետութեանց , յորմէ ընկալաք և զբժշկութիւն հոգւոյ և մարմնոյ զերծեալք 'ի բազմաստուածութեանն մոլորութենէ :

Յետ այսորիկ զինեալ արքային հանգերձ սրբոյ նահապետաւն և հաւատացեալ զօրօքն՝ հակառակ դարչելի կռոցն , և խորտակեալ զամենեսեան զոսկիակուռ դիսն բաշխէին աղքատաց , և զդիւաբնակ մեհեանս նոցա 'ի հիմանց տապալեալ նշանաւ խաչին Քրիստոսի յերկիր կործանէին , և 'ի տեղիս նոցա տաճարս հրաշալիս Աստուծոյ յօրինէին՝ նաև 'ի սրբոց մարտիրոսացն տեղի նահատակութեն գեղեցիկ կուսին Հռիփսիմեայ և մեծ վկայուհւոյն Գայիանեայ և ընկերացն . վկայարանս բազ-

մապատիկս յարդարեալ շինեցին ըստ տեղւոյն ցուցելոյ նմա տեառն Աստուծոյ: Սրբեալ լինէր այնուհետեւ աշխարհն յայսոց պղծոց, յայտնապէս աղաղակէին դեւք մեծաբարբառ վայիւք ընդ հալածումն իւրեանց 'ի կապանաւորէն Գրիգորէ:

Արդ պէտք էին յետ այսոցիկ կատարման որոշեալ արդեւք. վերջաւորն նորոգմանն միւսանգամ ծնընդեանն. զի Որ ոչ ծնցի 'ի ջրոյ և 'ի հոգւոյ, ասաց փրկիչն, ոչ մտանէ յարքայութիւն Աստուծոյ: Իսկ արդեւք զի՞ յապաղես այրդ Աստուծոյ, յառաջ մատիր, և 'ի կատարումն 'ի Քրիստոսէ շնորհատացեալդ քեզ հօտ ածցես. տուր սոցա զփրկականն կնիք, դրոշմեա զժողովուրդդ տեառն 'ի նշան տէրունի, զգեցո դոցա զՔրիստոս 'ի ձեռն մկրտութեան, պատրաստեա զժողովուրդ տեառն սեպհական, զի ահա աւետարանական քարոզն աւանդեցաւ, ճշմարտութիւնն հաստատեցաւ. Աստուած փառաւորեցաւ, բանսարկուն յամօթ եղեւ, սա-

տանայ կործանեցաւ, Բելիար պար-
տեցաւ, ժողովուրդք 'ի դիւական
պատուհասիցն բժշկեցաւ, ամենե-
քեան զհետ օրինացն Քրիստոսի ըն-
թացան: Արդ զի՞ եւս յապաղես,
ընդէ՞ր տակաւին յերկուանաս,
Հի՞մ արդեւք դանդաղիս. մերժեա
զամենեսեան, լուսաւորեա լուսով
գիտութեան, Նորոգեա վերստին
ծննդեամբ:

Այսպիսիս ուրեմն աղաչէր Թա-
դաւորն, առ ոտս անկանէր սրբոյն,
պաղատանս մատուցանէր. իսկ ե-
րանելին ոչ ախորժէր, ոչ հաւանէր
փարելի մաղթանացն. Չհամարձա-
կիմ, ասէ, յանդգնել յաստիճան՝ որ
առաւել է քան զիս, չեմ բաւա-
կան բառնալ զլուծն տէրունական,
ոչ կարացից յաղագս բանաւոր հօ-
տից համարս տալ Հօտապետին
Քրիստոսի, վասն որոյ յերկնից
յերկիր խոնարհեցաւ, տակս որոյ
մեռաւ և թաղեցաւ և արեամբ իւ-
րով ազատեաց զամենեսեան 'ի ծա-
ռայութենէ մեղաց. գիտեմ զսէր
նորա 'ի վերայ ոչխարաց իւրոց, գի-

տեմ և զպատուէր նորա առ Պե_ տրոս յետ յարութեանն, եթէ սի_ րես զիս. ասէ, Պետրէ, արածեա զոչխարս իմ. քանզի մեծագոյն է պատուիրն, բայց դժուարակիր է բեռ_ նըն. գիտեմ և զհրաժարելն Մով_ սեսի 'ի կոչմանէ անտի, վասն որոյ չեմ արժանի այդմ աստիճանի, և ոչ եղէց վերակացու հօտից որոց զա_ րիւն 'ի հանդերձեալ յաւիտենին պահանջիցիմ: Զայսոսիկ ասելով երանելւոյն 'ի բաց հրաժարէր:

Զի՞նչ գործես, ով քաջդ, զիա՞րդ վեհերոտ 'ի բարձրագունից պա_ տուոյ, նեղութեանցն համբերե_ ցեր, զանտանելի տանջանսն կրե_ ցեր, եռացման կապարին հանդուր_ ժեցեր, անհնարելի չարչարանացն ժուժկալեցեր, դաժանագունից գա_ զանացն անսակից եղեր, անսասանու_ թեամբն ճնշեցար, զբազմամեայ կորդն երկրագործելով հերկեցեր, զփուշն արմատաքի խլեցեր, զնորա_ տունկ այգին 'ի պտղաբերութիւն հասուցեր, այժմ դանդաղիս և 'ի բաց հրաժարես: Այո, ասէ, քան_

զի դողամ ընդ անհագնալուր հրամանն տէրունական մարգարէին ասացեալ· Որդի մարդոյ, դէտ կացուցի զքեզ տանդ Իսրայելի, զի եթէ ոչ զգուշացուցանիցես ասէ՝ զարիւն դոցա 'ի ձեռաց քոց խնդրեցից· գիտեմ իսկ զի որ միջնորդ ընդ Աստուած և ընդ մարդիկ փափագէ լինել հովուապետին Քրիստոսի պարտի նմանել, ըստ ասացելոյն Պաւղոսի թէ Նմանողք եղերուք ինձ որպէս և ես Քրիստոսի· որպիսի՞ արդեւք նմանութեամբ, Զի զամենեսեան, ասէ, շահեսցի, զի ոչ զանձին իւրոյ խնդրեացէ միայն զլաւութիւն, այլ զբազմաց զի ապրեսցին· Նա և զանձն եւս դնել 'ի վերայ ոչխարաց։ Ո՜վ աստուածասէր հոգւոյն, ո՜վ ծայրագոյն խոնարհութեանն, ո՜վ մեծագոյն առաքինութեանն։ Աստանօր զտէրունականն կատարէր հրաման· Յորժամ զամենայնն կատարիցէք, ասասջիք եթէ ծառայք անպիտանք եմք· այլ և հանգոյն Պաւղոսի բարբառէր, եթէ Ոչ ինչ գիտեմ զանձին իմ խիղճ, այլ

ոչ եթէ այսու արդարանամ, զի որ քննէն զիս տէր է։ Եւ զի՞նչ յետ այսորիկ լինէր, կամ որպիսի՞ հնար ցուցանիւր 'ի տեառնէ տարակուսելի գործոյն. յայտնէր նմա տեսալեաւք գիշերի և աւուր. Արդ՝ քաջ նահատակ իմ, զգեցիր զզօրութիւն 'ի բարձանց, զօրացիր և ընկալ զաստիճան քահանայապետութեան. դու անպիտան զքեզ վարկանիս, ես խորհեւ զյոյժ ախտանացու զքեզ պսակեցից, դու զիջանելով խոնարհիս, ես մեծաւ փառօք զքեզ բարձրացուցից. ոչ հաւանեմ ըստ քում կարծեացդ զվճիռ. այլ զգեցիր զարդարութիւն քահանայական, և մկրտես զժողովուրդ իմ. դու աւետարանի իմոյ կարապետ, դու մկրտիչ, դու մանուկ մարգարէ բարձրելոյ կոչեսցիս, գնասցես առաջի իմ պատրաստել զճանապարհս տեառն, տալ զգիտութիւն փրկութեան ժողովրդեան իմոյ, զթողութիւն ամենայն մեղաց նոցա. և ահաւասիկ ես առաքեմ զհրեշտակ իմ առաջի երեսաց քոց որ հան-

դերձեսցէ զճանապարհս քո առա֊
ջի քո ։ Զի՞նչ այսուհետեւ ասա֊
ցես ով երանելիդ․ զո՞հ այլ ինչ ի֊
րաւաբանութեան պատասխանի․
եթէ համանեցիս ասացելոցդ,
նայեա 'ի մեծութիւն կոչողին, ըն֊
դէ՞ր արդեւք յապաղես․ Աստուած
է որ արդարացուցանէ, իսկ զարդար
մի՞լ է որ դատապարտ առնիցէ ։ Ոչ,
ասէ, ունիմ այլ ինչ հակառակել․
միանգամ խօսեցայ յերկրորդումն
ոչ յաւելլոց, ահաւասիկ կամ հնա֊
զանդեալ տէրունական հրամանին,
վստահացեալ 'ի զօրութիւն նորա ։
Ես տկար և ունայն, նա հզօր․ ես
հեղգացեալ, բայց նա արագ 'ի յօգ֊
նել, գիտեմ զի պատրաստ է բառ֊
նալ զտկարութիւն իմ, գիտեմ զի
լնու զթերութիւն պակասութեան
իմոյ ։ Զայնպիսի գովեմ ես հովիւ,
զայնպիսին վերակացու, զնորայն
ողջունեմ զտկարութիւն, զնորայն
ընդունիմ հեղգութիւն․ զի ոչ նա
զհետ սպասուոյն, այլ զհետ նորա
պատիւն ընթանայր, զի ոչ խնդրէր
զփառսն, այլ խնդրեալ լինէր 'ի

փառացն ։ Այսպիսին վայելէ քահանայապետ ըստ Պաւղոսի , սուրբ անմեղ անարատ , զատեալ 'ի մեղաւորաց և բարձրացեալ քան զերկինս ․ զի որ այնպիսի ոչ լինիցի , ոչ հովիւ ուրեմն կոչի , այլ գող և աւազակ և գայլ ապականիչ օձանելով զհօտն Քրիստոսի ․ ըստ որում և առմեզ իսկ երեւեցան հակառակողք ճշմարտութեանս , ոչ միայն գայլք , այլ և ժանտք և ամբարիշտք , Թշնամիք և դաւաճանողք , հայհոյիչք և կեղծաւորք , պիղծք և սուտ վարդապետք , առաջնորդք կոյրք և մոլորեցուցիչք , նեռինք և հոգեմարտք , որք Թշնամանեն զհոգին շնորհաց , որոց ոչ Թողցի ոչ յայժմուս յաւիտենին և ոչ 'ի հանդերձելումն , յորոց միշտ հայհոյի Ճանապարհն ճշմարտութեան ։ Վասն որոյ եԹէ հաճոյ Թուեսցի , պարտ և արժան է նախ և առաջին անցանել առ այնպիսիսն բանիւ , և ապա զերանելի հօրս մերոյ աւարտել ըղներբողական Ճառս ։

Հովուապետի է առաեանս , քա-

հանայապետի առնախմբութիւնս, պարտ է զատանել զգայլսն 'ի հօվուաց և առ նորա փառացն պատիւ՝ սակս ինչ և զմերս յիշատակել զվիշտ, քանզի կատարած յաւիտենից արդէն իսկ հասեալ է. անօրէնութիւն բազմացաւ, սէր ցամաքեցաւ, մոլորեցուցիչք բազումք, և մոլորեալքն եւս առաւել: Բեր աստանօր բացցուք զաստուածային գիրս յորս գտանեմք զՃշմարտութեանն Ճանապարհ, քանզի անգիտալն երանելի հօրս մերոյ, 'ի խորս բանից արկանէ զմեզ. ընթասցուք այսուհետեւ 'ի սուրբ լերինսն, 'ի մարգարէսն ասեմ և յառաքեալսն, և զգուշասցուք, զի մի՛ մոլորք բերիցեմք յամենայն հողմոց վարդապետութեան, և մի՛ մնասցուք 'ի ստորինս, այլ ելցուք 'ի լեառնն զկնի աշակերտաց բանին, և լուիցուք զինչ բարբառի քաղցր հովուապետն մեր Քրիստոս. Զգոյշ լերուք, ասէ, մի՛ ոք խաբեսցէ զձեզ: Պաւղոս, Զգոյշ լերուք 'ի բանից անտի, զգոյշ լերուք 'ի չար մշակաց անտի, և թէ

տեսչիք որպէս զնոյայք, և դարձեալ ասէ. Զգուշացարուք ոչ միայն անձանց, այլ և ամենայն հօտիդ. և արդ ես փոքր ինչ յաւելում 'ի բանս տէրունականն և յառաքելոցն և մարգարէիցն. և սկսանիմ ուստի՞, քան թէ յայսմանէ որ ասէ, Ես եմ սկիզբն և ես կատարած. այլ պատրաստեցէք ինձ իւրաքանչիւր ոք զմիտս, 'ի բաց գնելով զամենայն հոգս կենցաղականս: Ասաց աստուածեղէն բերանովն տէր մեր, Զգոյշ լերուք զի մի՛ խաբիցիք, զի բազումք եկեսցեն յանուն իմ և ասասցեն թէ ես եմ Քրիստոսն, և զբազումս մոլորեցուցանիցեն, և դարձեալ զգուշացարուք 'ի սուտ մարգարէիցն որ գան առ ձեզ մորթովք ոչխարաց, և 'ի ներքոյ են գայլք յափշտակողք, 'ի պտղոյ նոցա ծանիջիք զնոսա այս ինքն 'ի սուտ մարգարէութենէն, 'ի կեղծաւորութենէն, 'ի ղշաքաղութենէն և 'ի հայհոյութենէն: Արդ մի՛ ոք 'ի ձէնջ երկմտիցէ կամ վարկպարազի զբանս լուիցէ, քանզի Աստուած է

որ խօսին. վասն որոյ լուարուք հո_
վիւք հովուապետի ձայնին, լուա_
րուք և զգուշացարուք հոտիցդ, զի
որ ոչ մտանէ ընդ դուռնն 'ի գա_
ւիթ ոչխարաց, նա գող է և աւա_
զակ, և դարձեալ որ ոչ է ընդ իս.
հակառակ իմ է, և այլուր դուք ոչ
էք յոչխարաց իմոց անտի. տեսա_
նես, զիա՛րդ ամենայն ուրեք արձա_
նացուցանէ զխրատականսն, զի մեք
մի' մոլորիցիմք: Ո՛վ անճառելի մար_
դասիրութեանն, ո՛վ անտանելի խո_
նարհութեանն. զի՞նչ տացուք տրի_
տուր տեառն յաղագս այսր ամե_
նայնի, և կամ զի՞նչ արասցուք պա_
տասխանի հովուապետին մերոյ. ո՛վ
հովիւք և հովուակիցք, քանի՛ցս ան_
գամ պատուիրէ զգուշանալ մեզ
գողոց և յաւազակաց, ոչ միայն ա_
ւետարանաւն, այլ և մարգարէիւքն,
և աստուածաբան աշակերտօքն,
նմանապէս բարբառի, յամենայնսն
խօսի որպէս և կամի. և վկայէ ինձ
Պաւղոս ասելով, եթէ Զփո՞րձ ինչ
խնդրէք զՔրիստոսի որ ինեւս ընդ
ձեզ խօսի: Եւ արդ այսուհետեւ 'ի

մեզ բերից ձեզ զաստուածաբանիցն զբանս, լուիցուք 'ի նոցանէն եթէ զինչ արդեւք պատուիրեն մեզ:

Աստ ով երանելիդ Պետրէ, աստ պատուականագոյն գլուխ զոր ընտրեաց տէր մեր Յիսուս Քրիստոս, աստ մեզ յաղագս որոյ հանդերձեալ են պատրել զհօտն Քրիստոսի, զոր աւանդեաց քեզ հովուապետն և տեսուչ անձանց մերոց և շնորհեաց հոգին սուրբ: Ասէ Պետրոս. Զայս գիտասջիք զի 'ի վախճան աւուրցս այսոցիկ եկեսցեն այպանողք՝ ըստ իւրեանց ցանկութեանցն երթալով. և եթէ 'ի ձէնջ լինելոց են սուտ վարդապետք ոյք մուծանեն հերձուածս կորստեան. և բազումք հետեւին պղծութեան նոցա, որոց դատաստանն ոչ դատարկանայ և կորուստն ոչ ննջէ. մանկունք անիծից, թողեալ զուղղորդ ճանապարհն մոլորեցան: Զայս Պետրոս բարբառի երանելին, Ճշմարիտ վէմն հաւատոյ, հաստատութիւնն, յորոյ վերայ շինեաց

Քրիստոս զեկեղեցի իւր . Պետրոս որ զփականս երկնից ընկալաւ , որ մեծաւ զօրութեամբ զՍիմոնն զայն յերկիր կործանեալ հերձեր , գլուխըն և վերակացուն ամենայն հաւատացելոց 'ի Քրիստոս ։ Իսկ զԼինչ և Յովհաննէս սիրելի տեառն . Բազում մոլորեցուցիչք եկեալ էին յաշխարհ , մի՛ ամենայն հոգւոյ հաւատայք . և դարձեալ , Ամենայն որ ոչ մնայ 'ի վարդապետութեանն Քրիստոսի , զԱստուած ոչ ճանաչէ ։ Զայսոսիկ Յովհաննէս որդին որոտման , որ քան զամենայն սուրբս սիրեցեալն էր , որ 'ի ծագաց մինչ 'ի ծագս աշխարհի հնչեաց զբարբառ աւետարանին , ընդ նմին և Յակոբոս առաքեալ ասէ . Որ կամիցի բարեկամ նոցա լինել , թշնամի առնէ զանձն իւր Աստուծոյ . և Յուդաս , ի վախճան ժամանակի , ասէ , եկեսցեն այպանողք զհետ ցանկութեան իւրեանց երթալով , ամպք անջրդիք , հողմակոծեալք , աստեղք մոլարք , որոց խաւարն պահի յաւիտեան . զայս և առաւել քան

զորոյն Ցուգաս պատուիրէ ։ Եկ այսուհետեւ ծվանօթ ընտրութեան, սաս մեզ և գու յաղագս չար յաւիտենից այսորիկ ։ Պաւղոս ասէր . Գիտեմ ես զի յետ իմոյ ելանելոյ եկեսցեն առ ձեզ գայլք ծանունք որ ոչ խնայեսցեն 'ի հօտդ . տեսանե՞ս միանգամայն առաքեալ և մարգարէ, տեսանե՞ս ամենայն ուրեք զաստուածաբանիցն բանս միաբանեալ ընդ վարդապետին , քանզի ասէ դարձեալ . Զգոյշ լերուք , զի աւուրքս չարութեան են , և թէ Մարդք և կախարդք յառաջ եկեսցեն 'ի չար անդր , մոլորեալք և մոլորեցուցանեն , և թէ որոց Աստուած որովայնքն Նոցա են , և փառք ամօթն ։ Զայսոսիկ Պաւղոս պատուիրէր , Պաւղոս երգարանն եկեղեցւոյ , աստուածաբարբառ նուագարանն , քարոզն Քրիստոսի , փողն աստուածային բանին , ճարտասանն ճշմարտութեան , որսորդն հեթանոսաց ։ Արդ հաւանեցուցանե՞մք զձեզ այսոքիւք , եթէ ընդունայն վաստակիմ . այլ թէպէտ և ոչ զամենե-

նեպն , սակայն վասն փութացելոցն 'ի բարիսն ոչ կասեցուցանեմ ըզբանս • քանզի և մարգարէքն սուրբք յառաջագոյն գուշակեցին յաղագս սուտ վարդապետաց և ստապատեսուչ հովուաց , վասն որոյ ասէ Դաւիթ • Ոչ գոյ 'ի բերանս նոցա ճշմարտութիւն , և սիրտք իւրեանց նանրութեամբք լի • և թէ մեղաւորին ասէ Աստուած ընդէ՞ր բնաւ պատմես զարդարութիւն իմ , կամ առնուս զուխտ իմ 'ի բերանս քո , և թէ ընդ գողս ընթանայիր և ընդ շունս դնէիր զբաժին :

Արդ յաղագս ո՞յր արդեւք խօսի զայսոսիկ մարգարէն , ո՞չ ապաքէն քո • ընդ հովիւս և վերակացուս , զի զպատգամս Աստուծոյ մեք իսկ խօսիմք , որք զաշտիճան քահանայութեան ունիմք • և զիա՞րդ ոչ իցէ շուն յայտնապէս այն որ հակառակ իրաւանցն Աստուծոյ շարժեաց ըզլեզու իւր և շնացաւ ոչ ըստ մարմնոյ այլ ըստ հոգւոյ • քանզի կենդանութեամբ իմով զանձն իմ յափըշտակեաց • բայց մեք յառաջի-

կայն երթիցուք: Ասէ զայնցանէն գործեալ Դաւիթ. Խոստեսցին այնոցիկ ոյք ընտրեալ են արծաթով. և Սողոմոնի խորան տայ և տաէ. Որգեակ, մի խափեսցեն զքեզ արք ամբարիշտք կցորդ լինել ընդ նոսին արեան արգարոյ. և Եսայիաս, մանաւանդ թէ Աստուած 'ի ձեռն Եսայեայ, զերկին և զերկիր 'ի վկայութիւն գաստատանաւ ընդ Իսրայելի, թէ Լուր երկին և ունկն դիր երկիր, զի տէր խօսեցաւ, և ըստ կարգի մի ըստ միոջէ ասելով զյամառութիւն սրտից նոցա ասէ 'ի կատարածին բարկութեան. Ամենայն գլուխ 'ի ցաւս և ամենայն սիրտ 'ի տրտմութիւն, յոտից մինչեւ 'ի գլուխ չիք 'ի նմա առողջութիւն, ոչ վէրք, և ոչ այտուցք և ոչ հարուածք խղխայթեալք, ընդէր. քանզի վէր յայնժամ կոչի, յորժամ այլ մարմինն առողջ լինիցի, և միով մասամբ յաղագս վիրին անցցայի, իսկ եթէ բոլորովին անդամովքն վիրաւորիցի, չեն այնուհետեւ օգուտ ինչ ոչ ձէթ և ոչ պա-

տանս, և ոչ սպեղանիս 'ի վերայ դնելոյ:

Եւ արդ լուարուք հովիւք և երկերուք, մի՛ լռէք 'ի բանէն, այլ քարոզեցէք համարձակութեամբ, մի՛ տայք տեղի սատանայի, նմանողք եղերուք մեծին Պետրոսի, զիա՛րդ սաստեաց մեծաւ բարկութեամբ գարշելւոյն Սիմոնի, յորժամ զշնորհսն Աստուծոյ խնդրէր արծաթով ստանալ. զոր նզովեալ հանդերձ կաշառովն՝ 'ի կորուստ մատնեաց: Ընկալարուք և զխրատ աստուածայնոյն Պաւղոսի զգրեալսն առ Տիմոթէոս. Ձեռս վաղվաղակի ասէ, յուրուք վերայ մի՛ դնիցես, զի մի՛ կցորդ լինիցիս մեղաց օտարաց: Լուարուք և զտերունականն ասացեալն, մի՛ տայք զսրբութիւն շանց և մի՛ արկանէք զմարգարիտ ձեր առաջի խոզաց, որ է բանին Աստուծոյ մաքրութիւն. դարձեալ, Նմանողք եղերուք քաջ հովուացն, առաքինեաց արհական պատերազմողացն, և առաջին վերակացուացն եկեղեցւոյ, Թէպէտ և բազում ըն-

տրութիւն տեսանեմ երանելի ա-
րանցն այնոցիկ և այսր ժամանակի
անուանեալ հովուաց և վերակա-
ցուաց. Նոքա քաղցամարտիկ պատե-
րազմողք, իսկ սոքա փախստականք
'ի հոգևոր պատերազմաց. Նոքա
ժուժկալք, իսկ սոքա փափկասէրք.
Նոքա աստուածեղէն գրոց ընթերց-
ման և գիտութե՛ և կրօնից նախան-
ձաւորք, և սոքա պճնողք հանդեր-
ձիւք և արծաթասէր, և յայնոսիկ
միայն ճեպեալք առաւելով քան
զընկերս. Նոքա զանձինս իւրեանց
եդին 'ի վերայ ոչխարաց՝ նմանեալ
քաջ հովուապետին և փրկչին, այլ
սոքա իբրև վարձկանս Թողեալ
զոչխարսն փախեան: Ո՛վ երանելի
և աստուածայնոց արանցն այնոցիկ
որոց յիշատակն 'ի դպրութեան կե-
նաց գրեալ է:

Ողբայր երբեմն Դաւիթ յուշ առ-
նելով զգթութիւն Աստուծոյ. Ո՛ւր
են, ասէ, ողորմութիւնք քո առա-
ջինք տէր. ողբացից և ես նմանապէս
ընդ Դաւթայ, և ասացից արտա-
սուօք. Ո՞ւր են բազմութիւնք երա-

ներն եպիսկոպոսացն առաջնոցն և վարդապետացն, որք ծագեցին իբրեւ զփայլակն յաշխարհի բանս կենդանականս ունելով յինքեանս յորոց մի է և մեր պատկաւոր և վկայ, մանաւանդ թէ և առաջին քան զբազումս որոյ առաջի կայ մեզ պատմութիւն տօնախմբութենս. Նոքա էին հովիւք ճշմարտութեան, իսկ սոքա գայլք ապականիչք, նոքա զօրաւորք 'ի գործ և 'ի բանս աստուածայինս, և սոքա ընկղմեալք յինչս և 'ի ստացուածս մարմնականս. քանզի յաղագս արծաթոյ և հանդերձից խենեշութեան, երիվարաց և ջորւոց և արօրաձիգ եզանց և հօտից և խաշանց բազմանալոյ և պէսպէս զօշաքաղութեանց բազում ջանս և խօսս 'ի մէջ առցա հանապազօր տեսանի. իսկ վասն բանաւոր հօտից փրկութեան և բարութեան նախանձու, և ոչ մի ինչ բան կամ հոգաբարձութիւն: Ո՜վ անմտութեն, ո՜վ չար արմատոյ արծաթասիրութեանն, զիա՞րդ կարացեն սոքա ուսուցանել զգեղեցիկ աղքատու_

Թիւնն Քրիստոսի , որ վասն մեր
աղքատացաւ , և աշակերտաց իւրոց
պատուիրեր ոչ ունել պղինձ 'ի գօ_
տիս . արդարեւ մոլորեալ են զի ոչ
իմանան զգիրս և ոչ զզօրութիւն
աստուածային բանից : Արդ լուա_
րուք հովիւք և մի՛ գանձէք ձեզ
գանձս յերկրի . արծաթ ձեր բազ_
մացաւ , և բանն նուազեցաւ . գոյք
ձեր աճեցին , և համարձակութիւնն
լռեաց , անբանիցն հոյլք բազմա_
ցան , և բանաւոր ձեր հօտքն գիշա_
տեցան , յաղագս որոյ համարս տա_
լոց էք հովուապետին Քրիստոսի .
ոչ անգիտանայք ուրեմն թէ իւրա_
քանչիւր ոք ընդ անձին իւրոյ միայն
պատասխանի տալոց է Աստուծոյ ,
իսկ դուք քահանայապետք և քա_
հանայք և սարկաւագունք ընդ ան_
ձանց և ընդ ժողովրդեանն որ հա_
ւատացաւ ձեզ 'ի տեառնէ . տեսէք
մի՛ արդեւք զանխուլացի 'ի ձէնջ տա_
ղանդացն առակ . զգոյշ լերուք
անձանց և ամենայն հօտիդ , մի՛ կո_
րիցէ և մի՛ ոք յոչխարաց ձերոց , զի
զարիւն նորա 'ի ձեռաց ձեր պա_

հանդէպ դատաւորին. արթուն լերուք այսուհետեւ եւ քարոզեցէք զբանն կենաց, 'ի բաց ընկեցէք զամենայն հոգս կենցաղականս, եւ պատրաստ եղերուք տերունական զալստեանն, զի յորժամ գայցէ, տոկոսեօք պահանջիցէ զհաւատացեալն ձեզ տաղանդ արծաթոյն ։

Զայս ամենայն զմտաւ ածելով, սիրելիք, մի՛ ագահութեան աղագաւ յանդգնաբար ժպրհիք յաթոռ վերակացութեան. օրինակ ձեզ կալջիք զերանելի հայրս մեր զորոյ աստանօր հաւաքեալ կատարեալք զյիշատակ, թէ զիա՛րդ այնքան բազմամեայ կրից տանջանացն տեւէր քաջութեամբ, եւ կամ ո՛րպէս 'ի կատարման գործոյն 'ի բաց հրաժարէր 'ի տեսչութենէն, գիտելով զի դժուարակիր է տերունականն լուծ. նոյնպէս եւ դուք որք պատահեցայք աստիճանի հովուութեան, հովուեցէք իմաստութեամբ որ ընդ ձեռք հօտդ է Աստուծոյ, որպէս ասէ առաքեալն, մի՛ 'ի հարկէ այլ կամաւ, մի՛ զօշաքաղու-

թեամբ , այլ յօժարութեամբ , մի՛ երբեւ արբելով ժառանգութեանն, այլ լինել օրինակ հօտին , զի յերեւել հովուապետին Քրիստոսի , ընդունիցիք զանթառամ փառաց պսակն . զոյն և Պաւղոս գրէ ասելով , Պարտ է եպիսկոպոսին անարատ լինել որպէս Աստուծոյ տնտեսի , մի՛ յանդուգն , մի՛ բամբասող , մի՛ թշնամանող , մի՛ հարկանող , այլ հիւրասէր , բարեսէր , ցած , արդար , սուրբ , ժուժկալ , վերակացու լինել հաւատարիմ բանին վարդապետութեան , զի կարող իցէ մխիթարել զհաւատացեալս , և զհակառակորդսն կշտամբել ։ Տեսանե՞ս , որպիսի՛ փոյթ յանձին կալեալ աստուածային առաքեալն՝ զգուշացուցանէ զեպիսկոպոսս բարեաց գործոց լինել նախանձաւորս , զի յետ օրինակն լինելոյ , կարող իցէ և զայլս օգտեցուցանել ։ Դարձեալ ոչ միայն զքահանայս զգուշացուցանեն աստուածային օրէնք և 'ի բարիս թեւակոխել միշտ , այլ և զամենայն հասարակ մարդկութեանս բառ

իւրաքանչիւր կարգի, զմեծամեծս և զփոքունս, զթագաւորս և զդատաւորս, զիշխանս և որք ընդ իշխանութեամբ, զմեծատունս և զաղքատս, զերկրագործս և զկուսանս, զայրս և զկանայս, զծերս և զտղայս որք միանգամ 'ի Քրիստոս մկրտեալ են և յանուն Քրիստոսի քրիստոնեայք անուանեալք, որոց պարտ է յիշել ամենայն հաւատացելոց Քրիստոսի զուխտն աստուածեղէն զոր առաջի բեմին Քրիստոսի հաստատեցէք, և բանիւ խոստովանեցէք զնա տէր և Աստուած, և հրաժարեցէք 'ի սատանայէ և յամենայն գործոց նորա: Տեսէք ո՞ւմ արդեւք ուխտեցէք զանձինս. ոչ հրեշտակի և ոչ երկրաւոր ուրուք թագաւորի՝ այլ թագաւորին թագաւորաց, և տեառն տերանց, նմա գաւանեցայք, զնա խոստովանեցէք առաջի բազում վկայից. որում և ակնկալջիք յայսմ հետէ գալստեան նորա յերկնից, զի եկեալ բերցէ զձեռագիր ուխտադրութե. խոստովանութեանն ձերոյ, և ըն-

Թերցցի տաճարի հրեշտակաց և մարդկան ։ Արդ 'ի բաց կացէք այսուհետև 'ի հեթանոսական գործոց, լուարուք առաքելոյ զի ասէ · Զայս ասեմ և ուխտեմ 'ի տէր, մի՛ ևս ձեզ գնալ որպէս և այլ հեթանոսք գնան ունայնութեամբ մտաց իւրեանց խաւարեալք հոգւով · վասն որոյ, սիրելիք, որպէս ընկալարուք 'ի տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ և 'ի սրբոց աշակերտաց նորա զպատուիրանս, 'ի նմին կացջիք պնդութեամբ ։ Ճշմարիտ առաջնորդաց ձերոց հնազանդ լերուք, և 'ի պղծոցն զգուշացարուք, զի աւուրքս չարութեան են, և փոխանակ հովուաց գայլք մտանեն հօտապետք, որք զկերպարանս ցուցանեն արտաքուստ հրեշտակի, և 'ի ներքոյ տեղի են սատանայի, բանիւ ձեւանան բարեպաշտք և գործովք իւրեանց ուրացեալք ։ Բայց մի՛ խաբիցիք 'ի նոցանէն, այլ որպէս ընկալայք զտէր մեր Յիսուս Քրիստոս, 'ի նոյն գնասջիք մինչեւ 'ի վախճան, զի և ընդ նմին թագաւորեալք վայելեցէք զյաւիտենական կեանսն ։

Եւ արդ յաղագս այսորիկ աւարտեսցուք աստանօր զբանս, և զերջանիկ հօրն մերոյ և նահատակին մեծին զներբողականս ճառից բուռն հարցուք վերստին : Քանզի ծայրագոյն խոնարհութիւն նորա յորդորեաց զմեզ յայսքան ձգիլ երկարութիւն բանից, որպէս զի պարտ է որք այսմ աստիճանի բաղձան, և ախորժեն բանաւոր հօտից վերակացու լինել, օրինակ առնուլ զերանելին՝ մաքրել նախ և առաջին զանձինս յամենայն արատոյ ըստ նմանութեան նորա, և ապա յաստուածային յայս մերձենալ սըրբութիւն ըստ տէրունական հրամանին, եթէ Ծագեսցէ լոյս ձեր առաջի մարդկան, զի զգործս ձեր բարիս տեսեալ փառաւորեսցեն ըզհայրն երկնաւոր : Նա և թէ մարմնական ինչ փորձութեանց հանդիպեսջիք, մի անժուժութեամբ վհատիցէք, այլ համբերեցէք մեծաւ յուսով. տեսէք զաստուածազգեստ հարսն յառաջագոյն եթէ զիա՛րդ այնքան նեղութեանց և չարչարա-

նաց ժուժկալեցին յաղագս հօտին Քրիստոսի, համբերութեամբ բազմաւ 'ի վիշտս, 'ի չարչարանս, 'ի գանս, 'ի բանդս, 'ի խռովութիւնս, 'ի հալածմունս, 'ի պահս, 'ի սէր սրբութեան, 'ի բանս ճշմարտութեան, 'ի զօրութիւն Աստուծոյ, փառօք և անարգութեամբ, գովութեամբ և պարսաւանօք, իբրև մահկանացուք և ճշմարտապէս կենդանիք, իբրև տրտմեալք և հանապազ ուրախք, իբրև տնանկք և զբազումս մեծացուցին: Այս ամենայն գրեցաւ վասն նոցա յօրինակ մեզ զի և մեք զհետ շաւղաց նոցա երթիցուք:

Այլ և մարգարէքն սուրբք և նահապետացն դասք պէսպէս փորձութեամբ անցուցին զկեանս իւրեանց. Լուր իսկ Դաւթայ յորժամ զվշտաց իւրոց 'ի Թիւ արկանէ զբազմութիւն, Տէր Աստուած 'ի քեզ յուսացայ, փրկեա զիս, և յիմոց հալածչացն ապրեցո զիս, և մինչև յե՞րբ տէր մոռանաս զիս 'ի սպառ, և թէ Ես 'ի տանջանս պատրաստ եմ, և 'ի բաց տրա յինէն

զտանջանս , և թէ կոխեցին զիս
թշնամիք իմ զօրհանապազ , և ըզ-
մոխիր որպէս հաց կերայ , և պան-
դուխտ եմ ես և նշդեհ որպէս և
ամենայն հարք իմ ։ Տեսանե՞ս զի ոչ
միայն զիւրն յայտ առնէ զնեղու-
թիւնս , այլ և զնախնեացն , և ոչ
պարզաբար զմիոյ կամ զերկուց այլ
զամենեցուն , որպէս ամենայն հար-
քըն իմ , ասէ , ցուցանելով և յայտ
առնելով եթէ ոչ ոք 'ի նոցանէ յաշ-
խարհիս յայսմիկ հանգստեան պա-
տահեցաւ ։ Երթիցուք եթէ ախոր-
ժէք 'ի բազմավիշտ նահապետն , յե-
րանելին ասեմ Յովբ , և լուիցուք
չափաւորապէս առ 'ի նմանէ զիւ-
րոցն պատմելով զչարչարանաց , որ-
պէս զի կարասցուք թերևս առ նո-
րայն նախանձու և զմերս թեթեւ
նեղութիւն համբերութեամբ տա-
նել ։ Ո՞չ ապաքէն իբրև զփորձու-
թիւն են , ասէ , վարք մարդոյ 'ի վե-
րայ երկրի և կամ իբրև զաւուրեայ
վարձու վարձկանի կեանք նորա . և
դարձեալ Գիշերք ցաւագինք տը-
ւեալ են ինձ , լի ցաւօք լինիմ յերե-

կորեայ մինչեւ յառաւօտ, և առ-
գաւըք ծառայ լինին, զի մատնեին 'ի
ձեռս ամբարշտաց. իսկ առ Ա-
տուած ասէ. Զարհուրեցուցա-
նես զիս տեսլեամբ գիշերւոյ, մատ-
նեցեր զիս 'ի ձեռս անօրինի, եդիր
զիս բամբասանս ազգաց, պաշա-
րեալ եմ յամենեցունց: Տեսանեմս
ցաւագին պատմութիւն, տեսանեմս
բանաւորական վիշտք: Նման սմին և
Երեմիաս բարբառի. Ո՛հ մայր իմ
ընդէ՞ր ծնար զիս. այր դատեալ և
դատապարտեալ, տեսանել զթը-
շուառութիւնս մարդկան: Այսպէս
և ամենայն արդարոցն դաւքն 'ի
ցաւս և 'ի չարչարանս անցուցին ըզ-
կեանս իւրեանց: Վասն որոյ աղա-
չեմ և փոխան ասեմ, մի՛ հանապազ
զանդորր և զընդարձակն խնդրէք
ճանապարհի հետեւումն. քանզի և
զինուոր որ պատաղիցի 'ի կեանս
աշխարհիս և ոչ ըստ օրինաց զօրա-
վարին մարտիցէ, ոչ պսակեսցի առ
'ի նմանէ. Նմանապէս և դուք, մի՛
վատք և վեհերոտք յասպարիզի նա-
հատակութեանն դտանիցիք, այլ

Նմանեալք երանելի արանցն , համբերեցէք հասելոցն նեղութեանց որ վասն բարեպաշտութեանն . գիտէք իսկ զի նեղութիւնք զհամբերութիւն գործեն , ըստ Պաւղոսի , համբերութիւն զհանդէս , հանդէսն զյոյս բարեաց , յոյսն ոչ երբէք յամօթ առնէ զհաստատեալսն նովաւ : Եւ արդ մի՛ 'ի նեղութիւնս միայն հայիք , այլ և 'ի պսակն , մի՛ յախտսն եւեթ , այլ 'ի փոխարէն հատուցմունսն , մի՛ 'ի տանջանսն , այլ յարքայութեանն խոստումն . քանզի և այս մեծագոյն իմն երեւի յուսոյ լրումն , յաղագս հանդերձեալ բարեացն անտես առնել ըզներկայիս չարչարանս :

Այլ այժմ բաւական վարկանեմք որ յաղագս այսորիկ ասացեալք . բե՛ր այսուհետեւ յառաջիկայսն երթիցուք , մտանելով 'ի բանն ուստի ելաք : Քանզի երանելին հայրն մեր և մեծ խոստովանողն Գրիգորիոս յետ պայծառագոյն յայտնութեանն որ 'ի վերուստ , հաւանեալ լինէր տերունական

հրամանին , երթայր այնուհետեւ
ընդունել ձեռնադրութիւն քա-
հանայապետութեանն , որ և ան-
դանոր նշան մեծագոյն , եթէ ո՞ ոք
էր Գրիգորիոս՝ ցուցանէր Աս-
տուած , որպէս զի հոգին սուրբ
աղաւնակերպ տեսլեամբ յայտնէր
'ի վերայ նորա հանգչելով . և այն-
քան մեծավայելուչ պատուով գա-
նայր սքանչելի քահանայապետն
Աստուծոյ յայցելութիւն նորա-
տունկ ժողովրդեան իւրոյ . ընդ ա-
ռաջ ընթանայր այնուհետեւ 'ի
պատուի նմա մեծ արքայն Տրդա-
տիոս հանդերձ ամենայն զօրօքն , և
պատահեալ միմեանց առ գետոյն
Եփրատայ ըն տանէր զամենեսեան
խնդութեամբ բազմաւ . քանզի մկր-
տէր զնոսա յանուն սուրբ Երրոր-
դութեանն , յորում և լոյս անճա-
ռելի ծագէր 'ի յերկնից 'ի հրաշ-
սքանչելեաց տեսողացն , և յայնմ-
հետէ պատրաստէր տեառն ժողո-
վուրդ սեպհական . շինէր և տա-
ճարս Աստուծոյ բազմապատիկս և
հրաշալիս յաշխարհին Հայաստա-

նեայց . կացուցանէր եպիսկոպո-
սունս , երիցունս , և սարկաւագունս
դասս կղերիկոսաց և վանականաց ,
ուսուցանէր զնոսա գեղեցիկ և ա-
ռատ վարդապետութեամբ 'ի գո-
րութեանց աստուածայնոց տառից ,
ամրացուցանէր 'ի հաւատս , հաս-
տատէր 'ի վերայ հիման առաքելա-
կան աւանդութեանցն . և այնքան՝
զի մինչեւ ցայժմ իսկ օր ըստ օրէ 'ի
լաւագոյնն յառաջանան ընտրեալ
նորայն ժողովուրդ և վիճակ :

Իսկ երանելին յետ սուղ ինչ ժա-
մանակի հրաժարէր 'ի վերակացու-
թենէ անտի , զցանկալին իւր եր-
թեալ համբուրէր լռութիւն . քան-
զի յոյժ սիրելի էր նմա ընդ մեծին
Եղիայի և ընդ Մկրտչին Յովհաննու
բնակելն յանապատի , վասն որոյ և
ախորժէր իսկ թագուցանել զանձ-
նըն 'ի մարդկայինս տեսութենէ ,
զի մաքրապէս անդանօր և աննիւ-
թաբար աննիւթականին հանդի-
պեսցի տեսութեանն Աստուծոյ :

Այսոքիկ են սրբազանի հօրն մե-
րոյ ուղղութիւնք , և այս նորայն

քաղցրութեանն պատմութեմբք ։ Այս֊
պիսի լուսագոյն առաքինութեամբ
քաղաքավարեաց յաշխարհի , ոչ 'ի
հեշտութիւնս ինչ կենցաղականս ,
այլ 'ի գանս և 'ի տանջանս , 'ի քաղց
և 'ի ծարաւ , 'ի ցուրտ և 'ի մերկու֊
թիւն , 'ի բանդ և 'ի կապանս , 'ի լե֊
րինս և յանապատի , սիրեաց զԱս֊
տուած և սիրեցաւ առ 'ի նմանէ ,
փառաւորեաց և փառաւորեցաւ ,
Զփառաւորիչս իմ , ասէ , փառա֊
ւոր արարից ։ Գրիգորիոս Երրոր֊
դութեանն քարոզն , ուղղափառու֊
թեանն հաստատիչն , Քրիստոսի
հօտին վերադիտողն , իմաստութե̄
հոգւոյն տաճարն , երկնային կա֊
ռավարն , օդախաղաց թռչունն ,
տիեզերաց անշիջանելի լոյսն , պայ֊
ծառագոյն արուսեակն , մոլորելոց
առաջնորդն , ընտրութեան անօթն ,
սրբութեան տաղաւարն , աստուա֊
ծական նուէրն , հոգւոյն սրբոյ ըն֊
դունողն , միասնական Երրորդու֊
թեանն բնակարանն , առաքինու֊
թեանն օրինակն , պատուիրանաց
Աստուծոյ գործարանն , հայրապե֊

տաց գեղեցկութիւնն , միայնաւո_
րաց պայծառութիւնն, սրբութեան
ուղղեւորիչն , հաւատոյ հաստա_
տութիւնն , եկեղեցւոյ ամրութիւն :
Գրիգորիոս քրիստոսական օրինացն
վարդապետն , աւանդութեանց նո_
րին ուսուցիչն , դիւաց հալածիչն ,
նեղութեանց օրինակն , հանդար_
տութեան յեղանակն , խոնարհու_
թեան գեղափայլն , Ճգնաւորաց
նկարագիրն , անապատական տա_
տրակն , լուսափայլ արեգակնն , ա_
րագահաս միտքն , աննիրհելի ակնն ,
ապաշխարութեան ուսուցիչն , գար_
ձելոց միջնորդն , մոլորելոց առաջ_
նորդն , հիւանդաց բժիշկն , ախտից
սատակիչն , արիական հովիւն , ան_
քուն պահապանն, համբերութեան
արմատն , անձառելեաց տեսա_
նողն , ստորայնոց արհամարհողն ,
երկնաթռիչ արծուին , հրեշտակաց
պարակիցն , առաքելոցն հաղոր_
դակիցն , մարտիրոսաց չարչարա_
կիցն , արքայութեանն բնակիցն ,
Աստուծոյ հօր ժառանգաւորն ,
Քրիստոսի ժառանգակիցն որ ա_

ռաջի Երրորդութեանն ընդ հրեշտակս բարեխօսէ միշտ վասն ամենայն աշխարհի ։

Այլ դու աստուածային և պատուական գլուխ որ զամենեցուն գլուխն զՔրիստոս յանձին բերելով լոյս երեւեցար տիեզերաց, ով աստուածազգեստ և երջանիկ հայր, որ գեղեցկապէս քաղաքավարելովդ'ի յերկիր զընթացսն կատարեցեր, ըզհաւատսն պահեցեր, պսակագիր կէտին ժամանեալ հասեր, և առաջնորդական մտացդ մաքրութեամբ որքան կարելի է մարդկան՝ աստուածատես եղեալ վերաբարձար յանհասանելիդ բարձրութիւն. դու զչարչարանացն բառնալովդ'ի վերայ ուսոյդ զխաչ, միամտաբար զհետ Քրիստոսի ընթացար, որով զանկապտելին գանձեցեր զգանձ պահեալ քեզ 'ի յերկինս ։ Դու զկենցաղականս ամենայն վաճառեցեր. և զանգինն փոխանակ ստացար մարգարիտ զՔրիստոս ։ Դու ոչ 'ի վերայ աւազոյ հեղգաբար շինեցեր զտունն, այլ 'ի վերայ ամրացեալ վէ-

մին առ 'ի Քրիստոս հաւատոցն հաստատեցեր զհիմն, ուստի և 'ի շնչմանէ օդային այսոցն փառնաբեր հողմոց և յարուցեալ կռապաշտութեանց ուղխից մնացեր անսասանելի: Դու զծանրութիւն տունջեան բոլոր կենցաղոյս, և զտապ բոցակէզ միջօրեայ բարձեր ամենայնիւ, որով զվարձուցն ընկալար 'ի տեառնէ վաշխիւ զփոխարէնսն: Դու ըզտուեալն քեզ շնորհացն տաղանդառ յԱստուծոյ, առատապէս բաշխելով բազմացուցեր, որով զերանաւէտն լուար ձայն. Բարի ծառայ և հաւատարիմ, մուտ յուրախութիւն տեառն քո: Դու զլապտեր հոգւոյդ ողորմածութեանն իւղովն անշիջանելի պահեցեր, պատրաստ գտանելով մտանել ընդ Քրիստոսի յերկնայինն առագաստ: Դու ընդ նեղ և անձուկ ճանապարհորդելով շաւիղ արքայութեանն, վայելես այժմ 'ի վերին դերաշխարհին կայանսդ: Դու զկեանս քո խոկմամբ մահու վարելով, զախտս մարմնականս յեղանակաւ աս-

տուածսիրութեան հօգւոյդ. հնա-
զանդեցուցեր. դու յանձնառոյց
դղեակ անախտութեանն հաստատե-
լով գերակատար առաքինութեամբ
հաւատոյ սիրոյ և յուսոյ բարձրա-
ցար յիմանալիսն կառավարելով
ըստ Եղիայի յերկինս ամենայնիւ
յԱստուած միացեալ աստուածա-
տեսակ մաքրութեամբ: Եւ զի հա-
մառօտագոյն ասացից, դու և դյա-
ւիտենական սրբոյն ամենեցունց
զառաքինութիւնս հաւաքելով ի-
մաստասիրաբար ըստ օրինակի մե-
ղուաց զբազմատեսակ վարս ընտրե-
լով զիւրաքանչիւրոցն 'ի քոյդ բե-
րես նմանութիւն, զորոց բերցուք
առաջի մի ըստ միոջէ զանուանս
ընտրելոցն յիշատակաւ:

Արդ արդար, անարատ պատա-
րագաւն գովեցաւ. իսկ դու 'ի բազ-
մերջանիկ հայր ընծայ բանաւոր բո-
լորովին զանձն քո մատուցեր Աս-
տուծոյ հանապազօր մաղթանօք առ
նոյն հպելով: Ենովս անտեսանելի
յուսով յուսացաւ 'ի տէր, իսկ դու
զառաջիկայ յուսոյն օրինակ արդէն

ցուցանես տակաւին ։ Ընովք հաճոյ եղեալ Աստուծոյ փոխագրեցաւ յանտորայնոցս , իսկ դու զհոգեւորդ տեսութիւն բոլորովին յերկրէ յերկինս փոխադրեցեր ։ Նոյ արդար գոլով և 'ի վերայ պատարագացն հաճոյ գտեալ, փայտեղէն տապանաւն զկենդանեացն ազգ ապրեցուցանէր 'ի Ջրհեղեղին կործանմանէն, բայց դու նոր իմն տապան հաստատեցեր զեկեղեցի Քրիստոսի , և 'ի Ջրհեղեղէ կռապաշտութեանն ըզբազմութիւն մարդկան ապրեցուցեր ։ Աբրահամ աստուածսիրութեամբն և հիւրասիրութբն սքանչելի եղեալ, միանգամայն և պատարագ ընդունելի առանց զենման զորդին որ յաւետեացն էր՝ մատուցանէր Աստուծոյ , բայց դու ոչ միանգամ այլ հանապազօր զՔրիստոս ընկալար հիւրասիրութեամբ 'ի գբին տառապանաց , և զեներ ոչ ոչխար փոխանակ Իսահակայ մատուցեալ, այլ զքեզ ինքնին բոլորապտուղ ողջակէզբանաւոր ընծայելով կենդանւոյն Աստուծոյ ։ Իսահակ որ-

դատրութեամբն և օրինակ լինելովն փառաւորի․ իսկ դու իբր քանուն արդարութեան զամենայն տեսակս առաքինութեան և զօրինակ բարեաց 'ի քեզ բերելով մաքրապէս ։ Յակոբ պարզմտութեամբ հոգւոյն և բազմորդութեամբն սքանչելի եղեւ, որով և զանազան տեսանէր յերկրէ յերկինս հասանելով․ մեծագոյն իմն խորհրդոյ օրինակ մեզ ցուցեալ, բայց դու ծնար հովիւս և հովուապետս և հօտս բազումս հօտապետին Քրիստոսի․ և ելս 'ի մուտ գնելով քո․ իբր սատիճանաց ելից ըստ իմանալի սանդղոց փառաց 'ի փառս փոխելով յերկրէ յերկինս վերակոչեցար․ վասն որոյ ոչ նշանաւոր խաչինս այլ նշանաւ հոգւոյն շնորհաց բազում որդիս լուսոյ ածեր 'ի փառս ։ Յովբ յաղագս անարատութեան և համբերատար ժուժկալութեանն երեւելագոյն եղեւ, բայց ոչ նուազագոյն քան զնորայն երեւեցաւ և քոյին չարչարանացն նահատակութիւն․ զի ոչ արտաքոյ քաղաքին յաղբիս այլ 'ի բազմավիշտ

խորխորատին դժոխային անապատի, և փոխանակ որդւանցն դաժանատեսակ թունաւորացն իժիցն և քարբից համբերելով: Յովսէփ ողջախոհութեամբն և անոխակալութեամբն հաշտեցաւ, իսկ դու օրինակ պարկեշտութեան յամենայնի երեւեցար, և յիմանալի եգիպտուհւոյն 'ի բնաւորական ախտից զմիտս մաքրելով, զպատմուճան մեղացն մերկացեալ, փախեար յամօթոյ, որ և անյիշաչարութեամբ զեղբայրադաւ բռնաւորսն 'ի սովոյ աստուածային բանին առատապէս կերակրեցեր գիտութեամբ Ճշմարտութեան հոգեւորական հացին իջելոյ յերկնից: Մովսէս հեզութեամբն և օրինադրութեամբ նկարագրեցաւ կոչել Աստուած փարաւոնին և առաջնորդ ժողովրդեանն Իսրայելի, սակայն և դու ո՛վ աստուածընկալ հայր, հեզ առ ամենեսեան, մանաւանդ առ բռնաւորագունիցն երեւեցար տանջանս, և 'ի մէջ նահատակութեան մատնելով զաստուածագիծն օրէնաց ընկալար

զտախտակս , յորում զհոգեւորական պատուիրանսն ոչ իսրայելի միայն , այլ ամենայն ազգերաց աւանդեցեր և զմեհեանս դիւաձոյլ պատկերացն իբրեւ զկառս փարաւոնի 'ի խորս՝ քոյին քաջութեամբդ ընկղմեցեր ։ Սամուէլ նախ քան զյղանալն յորովայնի՝ Աստուծոյ նուիրեցաւ , որ և շնորհս ընկալեալ մարգարէութեան գուշակէր զհանդերձեալսն ․ իսկ դու և յառաջ քան զգոյանալն ընծայեցար 'ի հոգւոյն նախագուշակութեանց նուէր Աստուծոյ , և անճառելի տեսլեամբ մարգարէական աչօք տեսեր զապագայիցն լինելութիւն ։ Քաջն Դաւիթ զամբարտաւանն Գողիաթ զինու հոգւոյն պատերազմեալ պարսաքարիւն կործանէր ․ իսկ դու զիմանալին Գողիաթ , այս ինքն զպետութիւնս և զիշխանութիւնս աշխարհակալ թագաւորս , զօրութեամբ խաչին Քրիստոսի ընկճեալ յերկիր կործանեցեր , և ըզբանաւոր գառինս ազատելով 'ի բերանոյ առեւծուն գերեցեր զամե-

նայն միտս 'ի հնազանդութիւնն Քրիստոսի ։ Եղիցի գովելի եղեւ նախանձուն Աստուծոյ, զի զամօթոյ մարգարէսն համարձակապէս սատակեալ կորուսանէր · իսկ դու զբռնաւոր արքայն, զսպասաւորն ամօթալից ախտից՝ 'ի կերպարանս փոխարկեցեր զազրատեսակ անասնոյ, ոչ 'ի սատակումն մատնելով, այլ 'ի կեանս վերստին առաջնորդեցեր ։ Յովհաննէս մեծ 'ի ծընունդս կանանց բարեբանեցաւ յարարչէն, ձայն բարբառոյ յանապատի, կարապետ և մկրտիչ Քրիստոսի, և դու ոչ նուազագոյն քան զնա երեւեցար, որպէս թուի ինձ · քանզի 'ի դասս հայրապետաց նախամեծարեցար, ընդ վկայսն նահատակեցար, յասպարիզի մարտին ընթացար, յանապատի ճգնեցար, 'ի ձայն բարբառոյ ընդ նմին գոչեցեր, բանին Աստուծոյ կարապետեցեր, անթիւ բազմութիւն բանաւոր հօտից Քրիստոսի մկրտեցեր, լոյս պայծառագոյն յետ արեգականն արդարութեան ծագեցար ։ Այսպէս

'ի ձեռն գործոց առաքինութեան զամենայն արդարոցն տակաւին և զմարգարէիցն 'ի քեզ բերեալ զօրինակ. զոմանց զհաստատունս, զկիսոց զհամբերութիւնն, զոմանց զնեղութիւնն, զայլոցն զմտացն զբարձրութիւնն. և ոչ սոցա միայն, այլ և Քրիստոսի աշակերտացն, զորս շնորհօք հոգւոյն 'ի սուերական օրինացն որոշեալ, զպաշտօն ճշմարտութեանն հաստատագոյն մեզ ըղխորհուրդն Աստուծոյ ցուցանէր: Պետրոս և Պաւղոս եղբարք գոլով համաշունչք ըստ հոգւոյ, ամոլք Քրիստոսի, ընտրեալք և առաքելոցն առաջինք, որք զհամասփիւռ տիեզերս ընկալեալ վիճակեալք և գերահռչակ քաղաքին Հռոմայեցւոց քարոզէին զաւետարանն տեառն, որք և զանօրէն սատանայի զկախարդն Սիմոն 'ի բարձրացեալն հպարտութենէ նշանաւն Քրիստոսի յերկիր կործանեալ հերձուածին: Իսկ դու, ով պատուածարեալ հայր, ոչ 'ի միում մասին կամ յանկեան ուրեք, այլ յարեւելից

մինչեւ յարեւմուտս , 'ի ծագաց երկրէ մինչեւ 'ի ծագս նորին լցեր զաւետարանն Քրիստոսի . որ 'ի նոյն իսկ մայրաքաղաքն ընթացեալ Հռոմայ՝ միաբանելով ընդ առաքելաշնորհ հայրապետին և աստուածասէր արքային , ընկալայք առաքելաբար սիրով զմիմեանս , ոմն արեւմտից աշխարհի ծագեալ զլոյս ճըշմարիտ աստուածգիտութեան , և միւսն ուստի ծագէ արեգակնն լուսաւորիչ նմանապէս . որ և երկաքանչիւրոցն բարբառ ծաւալեալ լցին զտիեզերս համօրէն : Ընդ մարգարէսն մարգարէացար հոգւովն , ընդ առաքեալսն քարոզեցեր ըզՔրիստոս , ընդ աւետարանիչսն աւետարանեցեր զորդին Աստուծոյ , ընդ հայրապետսն վարդապետեցեր զբանն կենաց , ընդ անապատականսն ճգնեցար , ընդ մարտիրոսսն նահատակեցար . ընդ հովիւսն հովուեցեր զհօտ քո բանաւոր , 'ի բանսարկու թշնամւոյն փորձեցար , ընդ Քրիստոսի յաղթեցեր : Զի՞նչ այսուհետեւ կոչեցից զքեզ . երկ-

բազմօրծ, արդարեւ Ճշմարիտ, քանզի զբանաւոր երկիր արեւելեան աշխարհի կանգնեցեր յերկրագործութիւն. յորմէ զփուշ անհաւատութեան արմատաքի խլեալ, ըզբանն բարեպաշտութեան սերմանեցեր փոխանակ, և զնորատունկ հոգեւորական այգին յատանելով, բազմապատուղ զնոյն գործեցեր, յորոց արմատս երկրագործութեան ամփոփեցեր իբրեւ հոգեւորապէս շտեմարանի: Ճարտարապետ արդեւք կոչեսցուք զքեզ, և յիրաւի ուրեմն. քանզի զմեհեանս դիւաձոյլ պատկերացն քոյով արիաբար քաջութեամբք տապալեալ յերկիր կործանեցեր, և փոխանակ սատանայական բնակութեանց, տաճարս գեղեցիկս և հրաշալի՛ս յանուն Քրիստոսի ընդ ամենայն աշխարհս հաստատեցեր. նա իբրեւ իմաստուն Ճարտարապետ զնորակերտ եկեղեցիս հաւատացելոց 'ի վերայ հիման առաքելական վիմին իմաստութ̄բ հոգւոյն վերականգնեցեր: Այլ զի՞նչ եւս անուանեսցուք զքեզ.

զինուո՛ր․ այո, քանզի որպէս քաջ զօրական սպառազինեալ հակառակ աներեւոյթ թշնամւոյն, մարտեար ընդ օրինաց և յաղթեցեր բազմատեսակ վիրօք մարմնոյդ, և վահանաւն փրկութեան զգլուխն հաւատոյ ամրացուցեալ ամբողջ պահեցեր իբրեւ զվէմ անդրդուելի և անշարժ, 'ի բերմանց բազմապատիկ ախտիցն պատերազմաց, և յուսով ընդդիմահարե՛լ զհակառակամարտարն քաջապէս պատերազմաւ ընկճեալ դարձուցեր ամօթալի, հալածելով 'ի փարախէ նորասնունդ քո ոչխարաց: Հրեշտակ ուրեմն կոչեսցուք զքեզ, քանզի ոչ և 'ի հրեշտակաց անկարօտ բնութենէն գոլով քո հեռի, անմարմնապէս արգէն'ի մարմնի կենցաղավարելով և իբրեւ երկնային ոմն մարդ և յերեւելեացս գերաշխարհիկ հրեշտականման վարուց ցուցանիս օրինակ: Զի զի՞նչ առաւելագոյն գործիւր երբեմն 'ի ձեռն հրեշտակին յառաջագոյն յափշտակեալ զԱմբակում 'ի Սիոնէ և հասուցանել 'ի Բաբե-

լոյն և 'ի գըլ առաւօտուցն Դանիէլի զճաշն մատուցանելով, քանզի գու եւս հրաշափառագոյն որպէս Թուի ինձ հաւատալէս 'ի ձեռն հրեշտակի կերակրէիր 'ի բանդին : Նաւուղեզ արգեւք առձայնեացուք զքեզ. և յիրաւի ուրեմն ,.քանզի զորս ընդ մեծ և արձակ աշխարհիս այսորիկ զիւական անհաւատութեան ծով նաւակոծեալ ծփէին , քոյով որբազանաբար առ Աստուած հայցուածովք զամբոխումն մոլորութե մրրկին 'ի հանդարտագոյն դարձուցանելով սիք , մեծաւ զգուշութեամբ զալեկոծեալսն ուղղելով նաւս , 'ի ճշմարիտ խաղաղութեանն հաւատոցեր նաւահանգիստ :

Արդ ո՛վ հայր սուրբ և առաջնորդ փրկութեան ամենայն հաւատացելոց , որոց ոչ պակասեցար 'ի քոյոց սիրելեաց փոխադրելով յաշխարհէ , այլ զի Թէպէտ և զհասարակաց պարան հատուցեր զբնութեանս օրինաց , սակայն յիշատակք քաջութեան քո մնայ առ մեզ յաւիտեան . նոյնպէս և յայսմ հետէ

աղաչեմ ոչ եւս մեկուսանալ հո-
գեւորական այցելութեամբ առ 'ի
մէնջ, այլ յիշել զմեզ անմոռաց
խնդրելով 'ի հասարակաց յուսոյ
փրկութեան մերոյ, զի և մեք զպա-
տահումն սակաւագոյն վշտացս համ-
բերութեամբ կատարեսցուք. քան-
զի ըստ Առաքելոյ, որ զփորձ ա-
ռեալ է՝ կարող է փորձանաւորաց
օգնական լինել: Եւ զդուզնաքեայս
ներբողական բան առ 'ի մէնջ ըն-
կալջիր բարեմտաբար. զի Թէպէտեւ
անհանգէտ գոլով քում արժա-
նաւորութեան՝ սակայն ջերմագոյն
հաւատով և կատարեալ մատուցաք
սիրով, և քոյին վշտամբեր նեղու-
թեանցս յիշատակաւ 'ի մերումս
մխիթարեալ սփոփեցաք: Իսկ դու
երբեւ նմանող Քրիստոսի ընկալջիր
որպէս և նայն զայրւոյն խերեւէշ, զի
և ես նմանապէս նմին նուազեալ 'ի
զօրութենէ անդամոց, տկար գոլով
մարմնով և վշտագին անձկութեամբ,
մանաւանդ բռնադատեալ սիրով 'ի
քո համազգեաց 'ի քում վիճակիս,
նշանակ սիրոյ հատուցի քեզ ընծայ

ջերմագոյն սրտիւ . զի ահաւասիկ նուիրեալ եմ և ես յայսմհետէ ջանալ զկեանս զայս տաղտկալի և լինել ընդ Քրիստոսի . Թերեւս անդանօր հանդիպեսցուք միմեանց զուարճալի և գեղեցկագոյն հանգստեամբ, բնակցելով 'ի միասին մըշտընջենաւորապէս , և արժանաւոր լինել երանաւէտ խոստմանցն . որոց լիցի ամենեցուն հասանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, որում փառք և զօրութիւն հանդերձ Հարբ և ամենասուրբ Հոգւովն յաւիտեանս յաւիտենից, ամէն :

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

Ի Թուականիս ՌՂ Թարգմանեցաւ Ճառս 'ի յունականէն 'ի մերս, 'ի ձեռն Աբրահամու գրամատիկոսի 'ի հին և յեղծ օրինակաց . իսկ յարմարեցաւ ըստ բանից դպրութեան և բառից՝ յիմոյ նուաստութեանն Ներսիսի, հրամանաւ տեառն իմոյ և հարազատի Գրիգորիսի

Հայոց կաթուղիկոսի ։ Արդ որք ընթեռնուք կամ ընդօրինակէք յիշեսջիք զմերոյ գրեալ աշխատաւորսդ 'ի սմա ըստ իւրաքանչիւր անուան 'ի Քրիստոս Յիսուս. և պսակաւ զայս յիշատակի բան գրեսջիք յիւրաքանչիւր փոխարկութե. զի և դուք գրեալ լիջիք 'ի կենդանի տախտակին Քրիստոսի անջնջելի յիշատակաւ ։



# ՆՈՐԻՆ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

# Ի ՄԵԾՆ ԳՐԻԳՈՐԻՈՍ

## ԼՈՒՍԱՒՈՐԻՉՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ



Աստուածազարդից արանց գովասանութիւն բազում և զանազան է. որպէս և զանազանին յոգնապատիկ գարնանաբուղխ վայելչութիւն ծաղկանց. գունապաճոյճ սաղարթացեալ ազգի ազգի գունովք զոր ոչ բաւէ տեսիլ աչաց ժողովել 'ի շտեմարանս մտաց, վասն զի նա ամբարէ և լեզուն պատմէ առ 'ի պարգեւել բազմաց: Ուստի և մտեալ 'ի բուրաստան առաքինութեան քաջ նահատակին և մարտիրոսին, և արեգակնափայլ լուսա-

ուրեք քահանայապետին մեծաց հայոց. և հզեալ 'ի վերայ ծաղկաբեր վայելչութե նորա զաչս մտաց իմոց, ոչ գիտեմ թէ զո՞րս արդեւք կարողանամ բովանդակել առ իմաստասիրել պատմութեամբ. քանզի ցանկամ զամենայն ժողովել, երկնչիմ գուցէ 'ի բազմացն վրիպիցիմ. այլ բարւոք վարկանիմ նմանել ինձ մեղուին՝ փոքուն այն և անօսրաթեւ թռչնոյն, նա և որպէս գործ նորա սքանչելի է, նոյնպէս և առաքինութիւն սրբոյն Գրիգորի. և որպէս ոչ ոք կարէ պատմել և կամ գիտել զգործն այն սքանչելի, նոյնպէս և զսրբոյս զայս: Արդ որպէս մեղուն որ թէպէտեւ յօժարի զամենայն ծաղիկն ամփոփել յինքն, սակայն ոչ ժուժկալէ, վասն զի տկար է զօրութեամբ և վասն այնորիկ ընտրէ զորս 'ի մէջն պայծառ և անօսր և շտեմարանէ ընդ թեւօք և գործէ նոքօք զխորիսխ մեղու, նոյնպէս և ես զորս բաւականանամ ընդունել և զայն շտեմարանեցից 'ի միտս և պատմեցից լեզուաւ առ 'ի

քաղցրացուցանելոյ զքիմս ընծայելոցն որք փափագին լսել զգովասանութիւն սրբոյն Գրիգորի ։

Արդ զինչ կոչեցից զքահանայապետս զայս, եթէ ոչ արեգակն յարեւելից ծագեալ, որոյ եհաս նշոյլք ճառագայթիցն մինչեւ 'ի տունս Հոռոմոց աշխարհին ։ Ո՛վ սքանչելեացս. անկել կամելով ուրուք բուրաստան, նախ հատանելին փուշք և խլլին արմատք փշաստակարք, և հազիւ իմն արմատանայ բուրաստանն. այլ այս բուրաստան մեծի նահատակիս և քահանայիս և վեկայիս 'ի մէջ փշոց բուսեալ և երկնաչափ բարձրացեալ՝ հրեշտակասազարթ ծաղկավայելուչ գունովք և զփուշ տատասկ և զայլ արմատս փշաստակարս խոտոց ոչ 'ի բաց հատեալ ընկեցեալ. այլ փոխակերպեալ 'ի ծաղիկս անուշահոտս ծառս պտղաբերս, զգժնիկն խնծորաբեր արար անուշահամ և զտատասկն վարդաբեր և մանուշկաբեր անուշահոտս և վայելչացեալս, զերանելին ասեմ զՀռիփսիմէ և ըզ-

Գայիանէ առնել արժանաւոր բաղձա-
նօքս և սփռեալ ելից զաշխարհս
Հայոց մեծաց, յորում ոչ մնաց
խորշ ինչ 'ի հովանաւորութենէ սու-
րբ նոցա: Ո՛վ սքանչելեացս, այր
մարմնաւոր նմանել դասուց ան-
մարմնոցն, այլ և գերազանցել
ևս, եթէ ոչ յանդգնութեամբ է
ասել՝ քան զանմարմինսն, քանզի
նոցա ոչ գոն միջոցք մարմնոց և ոչ
ցաւք անդամոց. իսկ սա յինքեան
ընկալեալ զցաւս և զմիջոցս և համ-
բերեալ իբրեւ զայնս որ ոչ ունին
զդեգումն մարմնոյ: Բազում և այլ-
ևս է սորա առաքինութիւնս. հա-
ւասար առնեմ զսա Պետրոսի և Պաւ-
ղոսի, զի որպէս նոքա մեծաջան ա-
ռաքինութեամբ զաշխարհս արեւ-
մտից դարձուցին 'ի կռապաշտու-
թենէ 'ի ճանապարհս աստուած-
գիտութեան, սոյնպէս և երանելիս
այս զկողմանս արեւելից քարոզե-
լով և ուսուցանելով, եթէ պարտ
է պաշտել զՀայր և զՈրդի և զՀո-
գին սուրբ. բանն անմեկնելի 'ի Հօրէ
առնել մարմին 'ի կուսէն, կատա-



րեալ Աստուած՝ եղեւ մարդ կատարեալ, անախտ ծննդեամբն առեալ անապական մարմին. անճառ բանն Աստուած առեալ աճուածս մարմնով շրջեցաւ ընդ մարդկան, և որ ելից զօրէնսն թլփատութեամբն նա և ինքն, և քակեաց մկրտութեամբ, մատնեցաւ վասն մեր որ անմեկնելին էր 'ի ծոցոյ հօր, բարձրացաւ 'ի վերայ խաչին բանն, և մեռաւ մարդկային բնութեամբն և եկաց մնաց անմահ միացելովն 'ի նմա աստուածութեամբն. քանզի երկու բնութեամբն միացաւ 'ի մի Քրիստոսն, և վասն այնորիկ մահ մարմնոյն աստուածութեանն համարէր. Աստուած էր մարմինն որ կրէր զչարչարանսն, և անմահ էր աստուածութիւնն որ զգեցաւ ըզմարմինն. աստուածութիւնն զմարմինն աստուածացոյց հարթ հաւասար միաւորեալ ընդ բանին, որպէս զի այնու մեռանիցի և թաղեսցի վասն մեր, և նոյն աստուածութեամբն յարիցէ և զգժոխս աւերեսցէ: Զնա ծաներուք, նմա եր-

կըրպագեցէք, զի Նա է Աստուած ամենեցուն :

Եւ այսպիսի վարդապետութիւն ուսուցանէր զազգն զայն զամբարտաւան և զհպարտ : Սա աճեցոյց զտաղանդն, ոչ եթէ զմինն երկուս, կամ թէ զերկուսն չորս կամ ըզհինգն տասն, այլ անհամար թիւս հազարաց : Սա լուաւ բանս 'ի տեառնէ. Ծառայ բարի և հաւատարիմ, որովհետև 'ի սակաւուդ հաւատարիմ ես, 'ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մուտ յուրախութիւն տեառն քո : Անուանեմ զերանելին զայս՝ առաքեալ, որպէս և էն իսկ առաքեալ քարոզելով զԱստուածն ճշմարիտ, քակելով զբագինս և ուսուցանելով երկրպագել Աստուծոյ երկնաւորի, 'ի բաց թողուլ 'ի պաշտելոյ զարարածս և պաշտել զարարիչն արարածոց : Սա փափագեաց ուսուցանել զմատեանս աստուածաշունչ գրոց և գրեաց իմաստութեամբ ձայնս և ուսոյց ժողովուրդս բազումս. զսա ասեմ Նոր Դանիէլ, զարքայն Բա-

բելացւոց պատժելով ճարակելով եզն յանապատի, որպէս և եղեւ իսկ եզն, այնպէս հակառակեալ Տրդատիոս զգեցաւ զկերպարանս խոզի և աղօթիւք սրբոյն փոխագրեալ 'ի մարդ: Յոյս հաւատ ունելով բոլոր իբրեւ զհատ մանանխոյ յորում ոչ կարէ որդն ապականիչ բուսնել անդ՝ և նուազեցուցանել զպարարտութիւն հատին. այլ այնպէս բրեաց զհաւատոյն վըստահացեալ եթէ կատարեսցէ զոր ինչ և հայցեսցէ. և եթէ լերինն իսկ ասացեալ փոխեաց՝ հնարէր փոխելոյ, թող թէ զմարդ խոզացեալ փոխարկել, թէպէտեւ արդարեւ է այս նոր իմն սքանչելիք:

Այլ ես յոյժ հիացեալ եմ ընդ աւնին սքանչելիսն և յօժարիմ գովել, բայց զանգիտեմ յիմոց բանից գուցէ ըստ արժանեացն ոչ իցեմ բաւական, բայց աղաւաղել զցանկութիւնս իմ ոչ կամիմ, քանզի յօժարութիւնս իմ ջանայ յաղթել տկարութեանս, ասացից զոր բաւականանամ գովել յորոյ վերայ

երեւեցաւ այն Աստուծոյ ։ Ո՛վ նոր զքանիչելեացս , զարեգակն յօգս երկնից արգելեալ Աստուծոյ 'ի բարձանց անտի արձակել զճառագայթս 'ի վերայ երկրի . իսկ զերանելիս զայս արկեալ 'ի խոր գբի 'ի բարձունս երկնից արձակեաց զճառագայթս իւր . զոր տեսեալ հրեշտակք և հրեշտակապետք երանեցին զնա և սպասաւորէին նմա 'ի գբի անդ , զմարմին նորա տեսանէին 'ի գբին և զառաքինութիւն նորա պայծառացեալ յերկինս , մարմնով յերկինս և հրեշտակ յերկրի , մարմնով անմարմին երեւեալ երկրաւոր մարդ և երկնաւոր հրեշտակ , սիւն հրեղէն յերկրի՝ որոյ գլուխն հասանէ յերկինս , լուսաւորիչ Հայաստանեայց և հիմն հաստատութեան Հոռոմոց . առաքեալ Քրիստոսի և առաջնորդ մարդկան ։

Նախ երանեմ քեզ , Կեսարիա Կապադովկացւոց , քանզի 'ի քեզ ձեռնադրեցաւ հօտից բազմաց հովուապետն և ձեռնադրեալն հաւասար առաքինութեանց ձեռնադրո-

զին ։ Սոքա բազումք արմատովք հաստատեալք, և նա ինքն միայն արմատ առեալ և զանարմատն արմատացուցեալ ։ Այս բազում պտղաբերութիւնք 'ի բազում մշակաց երկրագործեալ զկորդացեալսն, և նա ինքն մի մշակ՝ միով բազկաւ կալեալ զմաճոյ արօրոյ, բազում կորդացեալ երկիր կակղեալ բանիւն ճշմարտութեան և միով խոփով ակօսս բազումս արկանելով և սերմանս հինգերորդ, և բազում պտուղս արդիւնաւորեալ, և բուռն հարեալ զաստուածային սերմանեացն բիւրահօս մասամբքն սերմանէր անդս բազումս ։ Ցայնժամ բուսանէր 'ի միջէ սերմանացն ձեռանէ և յակօսահատ բազկէ բոյսք ազգի ազգի ։ Անդ էր տեսանել աշուն և գարուն, հունձք և կալք, այլ և ձմեռն հասեալ սերմանէր 'ի մի սերմանէ որ է բանն Աստուած, և ահա տեսեալ բոյսս զանազանեալ զոմանս առ 'ի հասկս հասեալ և զայլս 'ի հասկին պարարտացեալ, և զկէսս 'ի հունձս եկեալ.

և զայլն 'ի կալն ածեալ և կասեալ, և յստակեալ շեղջս բոլորեալ և 'ի լուսոյ շտեմարանս ժողովեալ:

Ածից և 'ի մէջ զձմեռն, առեալ զսերմանս ծաղկանց սառամբն որ ոչ տայր թոյլ բուսանել, զսերմանողն արկեալ 'ի վերայ 'ի մէջ թունաւորաց. մարդիկ խօսունք պատկերակից սրբոյն՝ առեալ զբարս թունաւոր գազանաց, և վիշապք մահաբերք թունաբերք առին ըզբարս հեզոց արանց՝ և լեզուին զոտս սրբոյն, և բերանովք որովք մահացուցեալ սպանանէին, այնու սպասաւորէին սրբոյն: Ապա զինչ. ընդերկարացաւ ձմեռն բազում ժամանակս, և զսերմանողն համարէին փոխեալ իբրև զսերմն որ արկեալ արկանէին 'ի մէջ սառինն, բացեալ ապա զվերայն խնդրէին փոխեալ անդամ մի առն, և լսէին զերգս բազում արանց, ակն ունէին հոտ զարշութեն 'ի թունաւոր վիշապացն 'ի հոտոտելեան ընդունել, և բուրեաց անուշ հոտ անուշութեան իբրև յեդեմ դրախտէն. խնդրէին

փոխեալ զոսկերսն, և տեսանէին արեգակնափայլ պատկեր, խնդրէին 'ի գբի, և տեսանէին զի շրջէր նա 'ի մէջ աստուածազարդ տաճարի, խընդրէին սովամաշեալ ոսկերս և'տեսանէին առողջս և պարարեալս աստուածային կերակրովք, խնդրէին գազանաբեկ մարմին, և տեսանէին զի հեզացուցեալ էր զգազանսն. տեսին արհամարհողքն զի արհամարհեալ էին յարհամարհէն, պատկառեալ ամաչէին և պակուցեալ հիացմամբ ասէին. Մեծ է Աստուածն զոր քարոզէ մեծն Գրիգորիոս, տկարացաւ զէն մեր յայնմանէ զոր տկարացեալ կարծէաք 'ի Թունաւոր վիշապացն. զի Թէ վիշապք ոչ էին անդ, բաւական էր սովն մաշել զմարմինն, որ և անհնարին է ապրել ամենայնի որ է մսեղի: Այլ սքանչելի է Աստուած 'ի սուրբս իւր, բարբառէին ըստ մարգարէին Դաւթի, զի փառաւորէ զփառաւորիչս իւր. հիացեալ ամաչէին ընդ գործս իւրեանց և ասէին. Զաս զոր արկաք 'ի գբի և խաւարի, մեզ որ ար-

գարեւ էաք որդիք խաւարի՝ փայլեաց իբրեւ զարեգակն, եւ հանեալ 'ի խաւարէ արար որդիս լուսոյ: Սա ուսեալ 'ի մեծ հօտապետէն որ խնդրէր քաւութիւն 'ի հօրէ իւրոց չարչարողացն, մեք սորա աւանդողք արկանելով 'ի վիրաւորն, եւ սա մեզ լուսոզգեաց լուսաւորիչ փայլականահրաշ ուղղեաց զոտս մեր 'ի ճանապարհ խաղաղութեան, եւ մեք սորա չարչարիչք եւ սա մեզ նախախնամող վերակացու: Սա հայր գթած, եւ մեք որդիք ապստամբողք 'ի հօրէ, մանաւանդ թէ եւ սպանողք: Սա զինուորեալ աստուածային բանակօք առ 'ի պարսաքարել զգայլսն ապականիչ 'ի փարախէ հօտից, եւ մեք մոլորեալք զհետ երթեալ յափշտակող գայլոյն ու փողոտեալ գահավէժ առնէր եւ կորուսանէր 'ի սպառ: Սա հովիւ քաջ, եւ մեք հօտք բառաչողք եւ փախչողք 'ի սուրբ փարախէն: Սա բժիշկ, եւ մեք հիւանդք անդամօք ճեպէաք զառողջացուցիչն մահացուցանել մարմնով, Թէպէտեւ չէր հնար, զի միշտ



կենդանի էր հոգւով։ Սա փշաքաղ և ճանապարհորդ որ առ աստուածային գիտութիւնն տանի, և մեք կոյրք և անզգոյշք առ անկանել 'ի գուբ կորստեան, և խաւարեալ աչօք, հարեալ զառաջնորդն մեր և ընկեցաք 'ի վիհս, և մոլորեալ մնացաք և ոչ իմանայաք։ Սա ճրագ լուսազգեաց, և մեք 'ի խաւարի նստէաք, ոչ երթայաք զհետ փայլակնաբորբոք շաւղաց սորա։ Սա ծառայ Աստուծոյ, և զոր մեք աստուածս անուանէաք՝ արարած ծառայք մարդկան, և վասն այսորիկ ծառայս Աստուծոյ արհամարհեաց վաստուածսն զոր պաշտէաք։ Սիրտք մեր ճմլէին և ոչ իմանայաք, այլ առեալ արկաք 'ի խորս անդնդոց, և նոյնժամայն տեսաք զխորս երկրին արեգակն ունելով յինքեան լուսատու մեզ, համարէաք զգազանս ապականիչս մարմնոյ նախախնամողին զմեզ, և տեսաք զսա Ադամ առաջին ստեղծուած՝ ոչ իշխեցեալ օձից և քարբից նախ քան զպատուիրանազանցութիւնն մերձենալ 'ի նա։

մեզ երթեալ զհետ պատուիրանազանցութեանն Ադամայ արհամարհեալ եղաք ՚ի գաղանացն. մեք ՚ի վերայ իշխանին իշխանութի՟ տուաք իշխելոցն, և տեսաք տկարացեալ զիշխանութիւն իշխողացն որ իբրև զաղաւնիս մնչէին հեզաբար, և մահացու լեզուքն, որ պատուիրանազանցութեան աղագաւ հրաման առ սպասել գարշապարացն, սպասաւորէին պատուիրանապահին և աշակերտին Քրիստոսի։ Զի՞նչ արդեւք ասասցից լեզուաւ, կամ զիա՞րդ համարձակին բիբք աչաց մերոց բաց լինել, նկատել և տեսանել զգթած հայրն մեր և խնդրել զթողութիւն որ բանս բեւրս նախատանաց զայրագնեալ արկանէաք ՚ի վերայ, և զի ոչ գո՞յր չար ինչ ՚ի սիրտս նորա, այնու համարձակեսցուք և երթիցուք ՚ի դուրս վիրապին և ասասցուք. Եկ ծառայդ Աստուծոյ արտաքս, և ծառայեցո զապստամբեալ ծառայս քո, որ առաք իշխանութիւն քեզ յայնմանէ զոր խորտակեցեր յանդունդս իջանելով

քո 'ի գուբս խոր, և որպէս ուսար 'ի քում վարդապետէդ, նոյնպէս արա և դու աշակերտաց քոց: Վարդապետ բարի, եւ յաշխարհն Հայաստանեայց որ երեւեցաք կրկին Բաբելոնն, և փոխանակ հնոցի բորբոքեցաք զմեհրապս, և բոց բորբոքեալ արկաք զթոյնս վիշապացն· զոր ցողացուցեալ էին առաքինութիւնք քո, շիջուցեր զմահաբեր բոց օձիցն և քարբից, և գնացեալ կոխեցեր 'ի վերայ կայծակնակերպ վիշապացն, և վերստին երեւեցար երկրորդ Անանիա, Ազարիա և Միսայէլ պաշտելով զԵրրորդութիւնն անբաժանելի զոր ոչ հաւատացաք: Արդ հաւատացաք և գոչեմք ընդ Նաբուգոդոնոսորայ արքային Բաբելացւոց տեսանելով 'ի մէջ հնոցին ցօղ աստուածային. Եկ արտաքս ծառայդ Աստուծոյ բարձրելոյ, քեւ հաւատացաք խոստովանել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգի, ել արտաքս 'ի հնոցէ վիրապէդ, և փառաւորեա զնա որ փառաւորեաց զփառաւորիչդ իւր, և պարծեաց աստուա-

ծայրին պարծանօք, և գոչեաս տա֊
տուածային ձայնիւ եթէ զնա պաշ֊
տեցէք զոր ես համարձակութեամբ
քարոզեմ, նա է արարիչ որ պա֊
հեաց զիս անարատ 'ի բուռն ժա֊
նեաց վիշապին: Եւ արտաքս նոր
Դանիէլ և երեւեցո զքեզ Սադով֊
կայ արքային Բաբելացւոց որ է
Հայաստան, զի արկար 'ի գուբ, ոչ
եթէ 'ի մէջ երկուց առեւծուց, այլ
եւս առաւել բանութեամբ գազա֊
նաց, զի ամենայն գազան թէպէտ
և բեկանէ, է հնար թերեւս միան֊
գամ առողջանալ, իսկ թունաբեր
ժանիք վիշապաց ոչ բեկանէ զմար֊
մինն և ոչ նուաղեցուցանէ զան֊
դամսն, այլ փոքր ինչ առզան չափ
գանելով զմահըն աններելի 'ի վե֊
րայ ածէ, և յայտմանէ մնացեր ան֊
վնաս, թող թէ չմահացար:

Արդ զայս ամենայն թերեւս 'ի
դէպ էր առնել նոցա, այլ մեք 'ի մէջ
ածեալ զնորա պատճառ չարչարա֊
նացն գովեսցուք: Արքային Տրդա֊
տայ յաղագս հօրն իւրոյ սպանման
մոլեգնեալ, և յետ այնչափ հա֊

րուածոց և տանջանաց գանից և գե-
ղարանաց, ոսկրաբեկ և անգամամաշ
կախաղանաց և ամենայն կտտանաց
որով կտտեցին զնա չար մախանօք և
նա բազում համարձակութեամբ՝
կրէր վասն անուան տեառն մերոյ և
փրկչին Յիսուսի Քրիստոսի, և առ
նոսա այսպէս ասէր. Դուք հարկա-
նէք զիս գանիւք և տանջանօք մար-
մնասէրք, վայելելով զայս կեանս
վաղանցուկ և երազատիպ յուսա-
հատ լինելով յանանց կենացն, այլ
ես զառժամանակեայ կեանս համ-
բերութեամբ տանիմ յաղագս այնմ
որ չարչարեցաւ վասն իմ. բացեալ
լինի ինձ կեանքն անմահութեան,
և դրախտին փափկութիւնն անու-
շահոտ բուրմամբ, յոր մտից և ժա-
ռանգեցից յաւիտեան և ուրախա-
նամ և երախտիս համարիմ զոր
դուք վարկանիք անձին իմոյ արկա-
նելով՚ի վերայ իմ զչարչարանսդ,
զի Թէպէտ ոսկրաբեկ արարէք գե-
ղարանօքդ զանգամս զատուզ ժամ մի
համբերելով, և յետ այնորիկ ա-
ռողջացեալ ատողքս և հաստարմարաս

իբրեւ զարմաւենիս բարձրացայց առաջի արարչին իմոյ բազմաստեղն տարածեալ սաղարթազուարճ և ծաղկազարդ , որ ոչ թառամեսցի յաւիտեան . այլ գարնանաբեր պնդակազմեալ և պայծառացեալ զուարթանալ 'ի բուրաստանս աստուածատունկ դրախտին , զի թէպէտեւ դժնդակ բարձրաբերձ մեքենայիւք և գելարանօք կախէք զիս գլխիվայր , սակայն վստահացեալ եմ թէ առ սուղ ինչ համբերութեամբ գլխաւորութիւն իմ , մինչեւ յերկինս բարձրասցի առաջի արարչին իմոյ . այլ և գաւազանդ և առջառաջիւ տանջանարանքդ որ մաշեն զմարմինս իմ , հաւատամ եթէ ոսկեհուռնակապ զարդարեալ պսակք հիւսեցին ինձ , զոր կապեսցէ թագաւորն 'ի գլուխն իմ , և նստուցանէ յառագաստ երկնաւոր հարսանեացն . և արիւնս այս որ հոսեալ իջանէ 'ի մարմնոյ իմմէ , ներկէ ինձ բեհեզ և ծիրանիս թագաւորական զգեստ անմահութեան որ ոչ մաշի յաւիտեան : Զայս ամենայն ճահ էր պատասխանել երանելւոյն :

Եւ զինչ ապա յետ այսր ամե-
նայնի. ոչ յագէր անօրէնութեամբ
արքայն Տրդատիոս որքան կապեալ
էր զնա և չարչարեալ, այլ իբրեւ
զայն ևս հասանէր 'ի վերայ իւրոցն
եղելոց, թէ արդարև սա է որ-
դին Անակայ պարթևի որ սպան ըզ-
Խոսրով զհայրն իմ, եւ հրաման
կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք և
պարանոցաւ խաղացուցանել 'ի գա-
ւառն Այրարատեան յամրոցն, ար-
կանել 'ի խոր վիրապին: Ո՛վ անմիտ,
թերևս ասէր սուրբն Գրիգորիոս,
զի թէ հայրն իմ մարմնաւոր զինու-
պատահեաց անօրէն հօրն քում,
նա սպանաւ և կորեաւ յանցաւո-
րէս զոր կեանս համարէր, բայց և
հոգւով իսկ յանման տանջանս
մատնի, բայց դու խնդրելով յինէն
զվրէժ հօրն քում որ ես որդի անօ-
րինի, որ թէ պիտոյ էր անքթելի
պահել զմարմինս իմ, ոչ յաղթէին
ինձ տանջանք քո, այլ աներեւոյթ
տանջանօք տանջէի զհոգիդ քո մար-
մնովդ հանդերձ մինչեւ զզջացեալ
երկիր պագանէիր Աստուծոյն իմոյ:

Արդ դու առաջի քո տանջես զիս, և դու ինքնին լինիցիս առաջի իմ տանջեալ և հեռագոյն յինէն, և ոչ իմանաս թէ այնպէս վրէժխնդիր է Թագաւորն իմ, զի զոր դու քեզ բարեկամս համարիս, զնա պատրաստէ քեզ տանջող յաւիտենական։ Զայսոսիկ և առաւել քան զայն 'ի դէպ էր ասել սրբոյն առ Թագաւորն։

Բայց մեք այսուհետև եկեսցուք առ դուքն վիրապայն, և տեսանիցեմք թէ զի՞նչ եղեւ անդ սքանչելիք․ ընկեցին զնա 'ի գուբ անդ և այն էր բնակութիւն օձից, և ապա զի՞նչ առնէր վիրապայն․ Օրհնեալ է գալուստ քո, ո՛վ հայր հրաշալի, քանզի նոքա պատրաստեցին զնա վիհ տանջանաց խորասոյզ անդընդային մթացեալ հաւասար, և ահա արարիչն քո պատրաստեաց զնա լինել բուրաստան քեզ, եւ բնակարան էր խաւարի և ահաւասիկ եղէ քեւ տաճար լուսեղէն․ անունն իմ կոչեցեալ էր խոր անդունդս, և քեւ վերացեալ ձգեցայ յօդս երկնից, և

հոլովեալ ունիմ յիս արեգականն լուսաւոր որ լուսաւորէ զաշխարհս Հայաստանեայց. արկանելով յիս զմարմինս բազմաց ժահահոտութեամբ աղմկին ապականէի, և սովամահ լլկեալ զմարմինս ընդ ոտկերս քանցէի, գարշելի և դաժանս բուրէի հոտս և դառնացուցանէի զհոտոտելիս բազմաց, բայց այժմ քեւ երեւեցայ ծաղկազարդ տերեւ, և զուարթացեալ վարդաբուղխ մանուշակաբեր բուրեալ ազգի ազգի անուշահոտութիւնս: Արդ, թունաբեր վիշապքն որ անդ բնակեալ էին, զինչ յորժամ տեսին զսուրբն Գրիգորիոս անդ ընկեցեալ. զառաջինն խնդրէին զսովորական բնութիւնն իւրեանց, տեսանէին զի հրեշտակք սրովբէական թեւօք բարձեալ իջուցանէին զնա առանց վնասու. և պակուցեալ հիացան և ասեն. Մեք ծնունդ եմք որդանն որ պատրեաց զԵւա ճաշակմամբ պտղոյն և աքսորեալ 'ի վայր ընկէց 'ի փափկութենէ դրախտին, և դու ղաւակ Ադամայ և

թոռն Եւայի որ ընկալան զփշաբերութեան անէծս, որ և առեր հրամանն յարարչէն սպառել զկնոյ մերոյ և մեք քում գարշապարացդ. և արդ ըստ այսմ հրամանի դիմեցաք 'ի քեզ կատարել զընական թշնամութիւնն մեր 'ի քեզ, և տեսաք զմարմնով քով զօրք անմարմնոց, և զքեզ դասաւորեալ ընդ անմարմնական դասն և պատկառեցաք. այլ շլացան խայթոցք մեր, և ժանիք մեր թիւնոցք կակղացան, և եղեն իբրև զմոմ հալեալ յերեսաց հրոյ աստուածազարդ պատկերէ քումմէ. Թոյնք մեր որ բոցավառեալ գործէին զմուխ 'ի մարմինս օտարս, աստուածաբուղխ աղբեր աղօթիւք քո դարձան և եղեն իբրև զջուր ցուրտ, և փոխանակ փախչելոյ յերեսաց քոց, եկեսցուք 'ի սպասաւորութիւն հեղացուցչիդ գազանային բնութեանս մերոյ, զոր և մոռացաք իսկ վասն հրաձեւ պատկերի քում առանց երկիւղի քում. և արդ աղաւնակերպ հնչմամբ սնան 'ի տան քում առանց երկեւղի:

Այլ և ես զարմացեալ եմ ընդ չորեքտասան ամ լինելոյ նմա անդ. բայց եկեսցուք յայն եթէ զինչ լինէր վախճանն յետ այնչափ ամաց։ Ասէ. Յայնմ ժամանակի Թագաւորն ժամ տուեալ որսոյ զօրացն և ինքն ելեալ 'ի կառս կամեցաւ 'ի քաղաքէ անտի արտաքս ելանել՝ և վաղվաղակի պատուհաս 'ի տեառնէ 'ի վերայ հասեալ, այսոյն պղծոյն հարեալ զնա 'ի կառացն 'ի վայր կործանէր, և մոլեգնեալ սկսաւ ուտել զմարմինս իւր. Նա և ըստ նմանութեան արքային Բաբելացւոց Նաբուքոդոնոսորայ ելեալ արտաքս քան զմարդկային բնութիւնս ըստ նմանութեան վայրենի խոզաց այնպէս բնակէր 'ի մէջ նոցա, մտեալ այնուհետեւ խառաձարակ լինէր. և այսոքիկ սքանչելի յայսմ վայրի։ Իսկ առ Թագաւորն զի՞նչ. պարտ էր ասել. Ո՛վ Թագաւոր, զհետ երթալով քո սատանայի արհամարհեցեր զծառայդ Աստուծոյ, վասն այնորիկ և նա որում սպասէիր՝ եկեալ տանջէ զքեզ

հրամանաւ Ճշմարտին Աստուծոյ , զոր պաշտէ մեծն Գրիգորիոս . զու արհամարհեցեր զմարմին երանելոյդ չարչարելով և արկանելով 'ի բանդ և 'ի վիրապ , վասն այնորիկ և զքո մարմինդ տեսեր 'ի մարմին խոզի . քանզի և անմտացար չարաչար հակառակիլ ընդդէմ Ճշմարտին Աստուծոյ , առնչել զհաւատարիմ ծառայ նորա . գոնէ յայսմհետէ զգասցիր չարաչար հարուածովքդ , և կործեա խողենովդ զսատանայ որ կործեաց զքեզ , զգենլովդ քո զարձեալ զմորթն Ադամայ . ասա անասնական լեզուաւդ , մեղայ առաջի տեառն , փոխանակ զի անարգեցի զայրդ զայդ սուրբ Ճարտարասան լեզուաւ , խոնարհեցո զխոզակերպ անհեթեթ գլուխդ որ սիրէ զթաւալելն 'ի տիղմս նեխեալ , փոխանակ զի հպարտացեալ բարձրացեալ ունէիր զդա 'ի վերայ սրբոյ նահատակիդ . կարկառեա զկճղակացեալ ձեռս քո և կալ զոտս մարտիրոսիդ , փոխանակ զի իշխանութեամբ շարժէիր զնա տասն մատամբքդ , և տայ-

իր հրաման կապել զոտս և զձեռս և զպարանոց տեառն քո և վարդապետիդ· ծանիր անզգօնացեալդ եթէ կենդանի է հնգետասանամեայ բազմեալդ զոր մտաւոր դոլով քո համարէիր մեռեալ գտեալ զոսկերաց դորա· դիմեա խոզացեալ մարմնովդ առ դուրս վիրապին, փոխանակ զի մարդ գոլով քո մղեցեր ընկեցեր 'ի վիհս մահաբերս· ապաչեա խոզացեալ անձամբդ զդա զոր փտեալ համարէիր զբժիշկդ քո, և տայ քեզ զտուայչին մարմինն· երթ գնա խոզավազս չորքոտամբդ առ ափն դբին, և աղաղակեա անդ եթէ եկ արտաքս ծառայդ բարձրելոյ, փոխանակ զի 'ի վերայ կառաց նստեալ բարձրամտէիր աստուածազգեաց լուսաւորչին։

Եւ արդ զայսոսիկ պարտ և պատճաճ էր ասել յայնժամ։ Բայց ապա զի՞նչ արդեւք իրք կատարէին· և ապա տեսիլ աստուածային երեւէր 'ի վերայ քեռ Թագաւորին· Ի զուր ջանայք բժիշկ 'ի մարդկանէ խընդրել· անբժշկելի ախտիդ ձերոյ չէք

հնար, բայց եթէ մեծն Գրիգորիոս որ յԱստուծոյ առաքեցաւ ձեզ բժիշկ, զոր դուք արբուցէք նմա բաժակ մահու, զի ես իսկ եմ Աստուած ծառայի իմոյ Գրիգորի, զոր դուքդ մահացուցէք վասն բազմաստուածութեան ձերոյ. զնա յարուցանեմ ձեզ բժիշկ զի բժշկեսցէ զձեզ, և 'ի ձեռն ծառային իմոյ հալածելոց են 'ի ձէնջ պատուհասքդ։ Եւ ահա հիացեալ, ասէ, ընդ տեսիլն կինն այն որ կոչէրն Խոսրովիդուխտ, և երթեալ պատմէր զտեսիլն։ Տեսի ասէ այր մի լուսազգեաց որ երեւեցաւ ինձ 'ի տեսլեանն, և ասաց թէ ոչ գոյ ինչ այլ բժշկութիւն հարուածոցդ այդ որ հասին 'ի վերայ ձեր, բայց եթէ յղեսջիք յԱրտաշատ և հանջիք 'ի խոր վիրապէ անտի զկապեալն Գրիգորիոս, նա եկեալ ուսուսցէ ձեզ բժշկութիւն։ Իսկ մարդիկն իբրեւ լսէին զայս ծիծաղէին և այպն առնէին զնա ասելով. Զի՞նչ խօսիս, դե՞ւ ուրեմն հարաւ 'ի քեզ, և դո՞ւ մոլեգնեցար. զիա՞րդ հնար է փր-

տեալ ոսկերաց խօսել , և ասել
դեղ բժշկութեան . ո՞րպէս բաւա֊
կան լինէր նմա հաստանել յատակս
վիրաւորին , զի և 'ի տեսլենէ օձիցն
որպէս ապրէր , թող թէ 'ի խայ֊
թոցաց նոցա , զի 'ի նոյն օր իբրեւ
ընկեցին զնա 'ի վերայն առ ժամայն
սատակեալ լինէր . և այժմ հնդե֊
տասան ամ է զոր և փոշի համա֊
րիմք զոսկերս նորա , թող թէ
փտեալ միայն . երթ լուեա զայդ֊
յասելոյդ , զի մի ծաղր արասցեն
զբանս բերանոյ քո ։ Եւ ապա
զի՞նչ ։ Հաւատաց կինն բանից նոցա ,
և երթեալ լուեր 'ի սենեկի իւրում ,
և ոչ զայրոյն ինչ համարեալ զնը֊
կանակն որ հրաման առեալ օր ըստ
օրէ ընկենոյր 'ի վերայն ։ Յայնժամ
կրկին երեւեալ նմա տեսիլն այլ և
հնգեկին և մեծաւ սպառնալեօք ա֊
սէ . Եթէ ոչ պատմեսցես սաէպ , և
մի երկնչիր ասել յայտն առնելոյ
զքեզ և անհնարին համարելոյ հըն֊
դետասան ամ կենդանի մնալոյ նո֊
րա , զի հրեշտակ տեառն առաքե֊
ցաւ սպասաւորել նմա , ես ընդու֊

նէր զնկանակսն և մատուցանէր նմա որպէս Եղիայի յանապատին, և նմա 'ի վերայ երկրի, այլ սմա 'ի խորս երկրի ունելով յինքեան ա֊րեգակն լուսաւոր զառաքինու֊թիւնն. զառաջինն յիրաւի ըստ թերահաւատութեան նոցա կար֊ծեցեր, բայց այժմ հաւատա բանից իմոց, եթէ ամենայն հնարաւոր է առ 'ի յԱստուծոյ. ո՞չ իցէ լուեալ քո եթէ զխա՞րգ տպրեցաւ Դանիէլ 'ի մէջ քաղցեալ առեւծուցն 'ի գբի անդ, և կամ երեք մանկունքն 'ի մէջ բորբոքեալ բոցոյն, և բարձ֊րութիւն բոցոյն նշանակելով զքա֊ռասուն և զինն օրեայ պահոցն զսըր֊բութիւնն, և կամ որպէս զոս֊կերսն զփտեալսն 'ի դաշտին պա֊տուիրանապահութեն Եզեկիէլի հրա֊մանն Աստուծոյ 'ի չորից կողմանց հողմ շարժեալ և եկեալ ոսկր առ ոսկր, և ոչ առ օտար ինչ, այլ իւ֊րաքանչիւր ոսկր. ընկեր առ ընկեր կցեալ՝ ջիլք 'ի վերայ ոսկերացն ա֊ծեալ և մորթ, և փչեալ շունչ կենդանութեան և կանգնեցան կա֊

ցին 'ի վերայ ոտից իւրեանց, ժողովուրդ բազում յոյժ. Նա և այժմ նոյն Աստուած է զոր քարոզէ սուրբն Գրիգորիոս, կարող է ապրեցուցանել զնա 'ի վիրապէ անտի. և արդ դու հաւատա բանից իմոց, և երթ պատմեա ժողովրդեանն։

Եւ ապա կինն սարսեալ հիացմամբ և զգուշութեամբ մտեալ պատմեաց նախարարացն, և նոքա կոչեն զմատակարար Թագաւորին, վաղվաղակի առաքեն յԱրտաշատ. Երթ, ասեն, մատո աղաչանս ծառային Աստուծոյ այնմ զոր ոչ համարեցաք մարդ, երթ աղաչեա ընդ բժիշկն զոր ոչ լուաք բանից նորա. երթ կոչեա զնա 'ի վիրապէն զայն որ կոչեցեալ է զմեզ յորովայնէ դժոխոց. երթ աղաչեա զարհամարհեալն 'ի մէնջ, զի արասցէ ողորմութիւն 'ի վերայ արհամարհողացս։ Զայս ամենայն և առաւել քան ընդ սոյն Թերեւս 'ի դէպ էր նոցա ասել։

Եւ ապա գնացեալ նախարարքն 'ի քաղաք անդր, և իբրեւ հարցեալ

եղեւ 'ի քաղաքացեացն պատճառ
գայլստեան նորա, զոր իմացեալ
պքանչանայիցն 'ի միտս իւրեանց հիա-
ցեալք և ասէին, որպէս խնդրէ
կենդանի 'ի գերեզմանի հնդեստա-
ստանեայ փտեալ ոսկերս. զիա՞րդ
խնդրէ ապրեալ մարմին որ ժա-
հահոտեալ է յորովայնի վիշապացն
փտեալ և ընդ հող խառնեալ, ո՞ր-
պէս խնդրէ զմարմին հողացեալ 'ի
բժշկութիւն որ զինքն ապրեցուցա-
նել ոչ կարաց: Եւ ապա զի՞նչ. կա-
պեցին ասէ կարս պարանաց երկայ-
նըս և ստուարս և արկին 'ի վերայ
անդր, և աղաղակեաց մատակա-
րարն 'ի ձայն մեծ և ասէ. Եկ ար-
տաքս ծառայդ Աստուծոյ եթէ
կենդանի, զոր գիտեմ իսկ եթէ
ստուգապէս կաս, որ է հրամայեալ
ելանել տէր Աստուածն քո զօրու-
թեամբ Աստուծոյ քո. եկ արտաքս,
ել ծառայդ Աստուծոյ և ազատեա
զծառայքս քո 'ի ձեռաց աստուա-
ծոցս զոր պաշտեմք. ել որդիդ լու-
սոյ և ազատեա զմեզ 'ի խաւարէ
ստուերացս. ել արեգակնդ 'ի խո-

րոց անդնդոց և առաւել լուսաւո-
րեա զմեզ քան զարեգակն որ հոլո-
վի 'ի վերին յօդս , վասն զի նա լու-
սաւորէ զաչս մարմնոց , և դու լու-
սաւորես զաչս հոգւոց մերոց և ա-
ռաջնորդես յերկիր ուղիղ , որ է
լոյս աներեկ և անմատոյց ։ Արդ
զայսոսիկ այսպէս ասելով նախա-
րարին , իսկ նա շարժէր զկարս պա-
րանոցն . և նոցա իմացեալ ձգեալ
հանին զնա արտաքս և տեսեալ զա-
րեգակն զի 'ի վերայ զգեցեալ էր
զամպն , քանզի թխացեալ էր մար-
մին նորա իբրեւ զածուխ սեւա-
ցեալ . և իմացեալ տեսին եթէ
մարմին էր որ կրէր զչարչարանսն ,
և իբրեւ զանմարմին համբերէր և
լուսաւորէր . և ապա հանդերձ մա-
տուցեալ զգեցուցին զնա , և հիա-
ցեալ զարմանային ժողովուրդն այն
զոր պարտ և պատշաճ էր աղաղա-
կել նոցա ըստ իմաստնոյն . Յայն-
ժամ կացցէ արդարն բազում հա-
մարձակութեամբ հանդէպ նեղչաց
իւրոց , և որ անգոսնէին զվաստակս
նորա տեսեալ զնա խռովեսցին և 'ի

վերայ ազանչելի փրկութեան նորա զարհուրեսցին յոյժ. զինչ շահ եղեւ մեզ հպարտութիւնն, և զինչ ամբարտաւանութեն նպաստ. արդ զայսոսիկ 'ի դէպ էր նոցա ասել:

Այլ մեք գովասանութեամբ հանգերձ պատմեսցուք զայն ինչ որ յետ այնորիկ լինէին: Եւ յորժամ ելնա 'ի վիրապէ անտի, Թագաւորն և ամենայն մարդիկն մոլեգնեալք մերկք և խայտառակք գային առաջի նորա և կացեալ արտաքոյ քաղաքին սպասէին նմա, և տեսեալ զնա 'ի հեռաստանէ զի գայր, սկսան մոլեգնաբար ուտել զիւրեանց մարմինսն, աղաղակէին և ասէին. Եկ մարմնաւոր հրեշտակ, և լուսովդ քո հալածեա զանմարմին զխաւարասէր հալածիչս մեր, եկ հալածիչ իշխողաց մերոց որ զայրացուցանէին զյանգգնեալ սիրտս մեր առ 'ի հալածել զզօրաւոր հալածիչս իւրեանց. եկ երեւելի մարմնովդ և հալածեա զաներեւոյթ խաւար հոգւոց մերոց, եկ նիւթական մաշկեղէն պատմուճանաւդ, և հալածեա

զաննիւթ և զանմարմին ընդդիմա֊
մարտքս որ հալածեն։ Եւ արե֊
գակնդ բազմախորշակ, և ցամաքե֊
ցո զկուտակեալ ուղխ անօրէնու֊
թեան մերոյ, և հրացո աստուա֊
ծային վարդապետութեամբդ որ 'ի
լիճ սառնամանեաց մածեալ ներ֊
կեալ եմք, եւ գետ աստուածային
և ոռոգեա զկորդացեալ անդս մեր,
որպէս զի դալարացեալ ծաղկեսցի
սերմն չորացեալ որ քեւ անկաւ 'ի
մեզ։ Առաքեսցո զհասկն հնձեա աս֊
տուածային մանկաղաւդ, և կասեա
եզամբք զաւակօք քո, և կամնասայլ
աստուածային լեզուաւդ քո և հո֊
սեա աստուածային լեզուաւդ և
չեղջեա աստուածային բազկաւդ,
և ած զարդիւնս քո յաստուա֊
ծային շտեմարանսդ, և երկնահոս
և կայծակ վարդապետութեամբդ
քո վառեա զփուշ դժնիկ որ հեղ֊
ձոյց զսերմանիս վաստակոց քոց։
Եւ մշակդ 'ի վերապէդ անդնդոց որ
սերմանեցեր 'ի խորոց 'ի վեր զսերմն
վարդապետութեանդ, եւ և 'ի մէջ
սառնամանեացս հոսեա զքաղցրա֊

շունչ հարաւոյ, և գործեա աս-տուածային զերկիր՝ զոր յառաջագոյն ոչ տայաք գործել, այլ զլուսաւոր արեգակնդ ՚ի խաւար արկեալ բանտեցայք չարաչար։

Եւ արդ ըստ արժանեաց գովել զերանելիս ոչ է հնար, բայց փափագումն հնարաւորէ զիս․ սացից կարճ ՚ի կարճոյ եթէ յետ այսորիկ զինչ արդեւք։ Ասէր արարիչն ընդ հաւատարիմ ծառայն իւր․ Ազնիւ ծառայ բարի և հաւատարիմ, մի՛ ինչ զմտաւ ած վասն սերմարկութեանդ քո․ վասն զի դու անկեցեր երկրորդ Պաւղոս, և ես սնուցանեմ, եկ մուտ յուրախութիւն տեառն քո․ մի՛ երկնչիր երկրորդ Մովսէս, զի պաշտօն դեռահաւատացիս ազգաց, դու սիրեցեր զիս առաւել քան զմարմինդ քո, և ես զհանգիստ զոր պատրաստեցի սիրելեաց իմոց տաց քեզ․ եկ հանգիր ՚ի բազում աշխատութեցդ նոր Դանիէլ․ եկ յառագաստ հարսանեացդ զոր յառաջագոյն խոստացայ քեզ․ եկ գասաւորեա ընդ

առաքեալսն կրկին առաքեալ, որ քարոզեցեր զբանն ճշմարտութեան յազգ հպարտացեալ. եւ պարեա ընդ հրեշտակաց գունդսն, որ յերկրի նմանեցեր վարուց նոցա. եւ վայելեա ընդ հայրապետս և տնկեսջիր արմաւենիդ սուրբ 'ի տան տեառն և 'ի գաւիթս Աստուծոյ քո ծաղկեսջիր. եւ պսակաւորեա ընդ վկայսն և զուարճացիր ընդ դասս նահատակաց իմոց 'ի սուրբ հարսնարանիս իմում, եւ ուրախացիր ընդ գունդս ճգնաւորացն որ սիրեցեր զերինս և զամայութիւնս, այլ և աղօթիւք խաչակցեցար ինձ անզրապակես. և վասն այսորիկ ես առաքեցից զգունդս հրեշտակաց իմոց, և ժողովեցից զքեզ առ իս, և մուծից զքեզ 'ի դրախտն յոր եմուտ աւազակն խաչիւն իւրով, վասն զի դու բարձեր զխաչ քո և եկիր ըզկնի իմ:

Երանելի ես դու 'ի հայրապետս, հայր սուրբ. հրեշտակ 'ի մարմնի և անմարմին ընդ անմարմինսն գասեալ. երանելի ես քաջ վերակացու

որ գտեր զխաշինս կորուսեալ Թա-
գաւորին քո առանց փարախի, և
ածեալ ժողովեցեր զնոսա 'ի գա-
ւիթս Նորա. Երանելի ես դու որ
քակեցեր զորջս գայլոց և խորտա-
կեցեր զգազանս ապականիչ, և պա-
րըսպեցեր զփարախ հօտի քում զօ-
րութեամբ այնմ վիմին որ հատաւ
առանց ձեռին, և արկեր ցանկ աս-
տուածային պատուիրանաւն և բազ-
մացուցեր զհօտս Թագաւորին քում.
Երանելի ես դու կոչեցեալ առա-
քեալդ, որ քարոզեցեր զաւետա-
րան որդւոյն Աստուծոյ և ծանու-
ցեր զանօրինական մարդեղութիւնն
ազգի օտարի և ուսուցեր երկրպա-
գել անբաժանելի սուրբ Երրորդու-
թեանդ և մի աստուածութեանն
Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ.
Երանելի ես դու հաւատարիմ վկայ
Քրիստոսի որ վկայեցեր վասն Նորա
ըստ Նմանութեան երանելւոյն Պե-
տրոսի թէ Նա է որդի Աստուծոյ
կենդանւոյ անմեկնելի 'ի ծոցոյ Հօր.
Երանելի դու որ յանձն առեր զչար-
չարանս վասն Նորա որպէս և Նա

վասն քո. Երանելի ես որ զհնգետասան ամ ժուժկալեցեր 'ի վիրապի անդ: Գովեմ և զՀոգի նորա սուրբ զոր դու քարոզեցեր, զէակիցն Հօր և Որդւոյ. որում պատիւ և զօրութիւն յաւիտեանս յաւիտենից, ամէն:



# ԳՐԻԳՈՐԻ

# ՄԱՐԿԱՒԱԳԱՊԵՏԻ

## ԵՒ ՃԳՆԱՒՈՐԻ ԽՕՍՔ

## Ի Ս· ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

ԱՍԱՑԵԱԼ Ի ՍՈՒՐԲ ՔԱՂԱՔՆ

ՅԵՐՈՒՍԱՂԷՄ



Որպէս սովոր են 'ի մարմնաւորաց բազումք 'ի մարդկանէ՝ յօրինել սեղանս մեծամեծաց և փառաւորաց 'ի պէսպէս կերակրոց և ըմպելեաց, յանուշահամ խորտկացն և 'ի ծաղկահոտ գինեացն, որով զուարճանան և գրգանան աշխարհասէրքն և հեշտասէրք, որով տղրմին հոգիքն, և ընդ նմին տանջին մարմինքն. քանզի գրեալ է թէ Որ

սիրէ զաշխարհ Թշնամի առնէ զանձն իւր Աստուծոյ. իսկ զԹշնամեացն ասեն գիրք մեծամեծ տանջանս և վիշտս ընդունել 'ի տեառնէ. իսկ հոգեւոր աստուածային վարդապետացն առաւելագոյն կազմել սեղան պայծառազարդ, քրիստոսասիրաց և ընԹերցասիրաց, որ զհոգիսն ուրախացուցանեն մարմնովքն հանդերձ՝ զմայլեալ 'ի հոգեւորական խորհրդոցն, զոր բերեն 'ի սեղանս ժողովեալ 'ի սրբոց և յաստուածաշունչ տառից քրիստոսասէր մշակքն: Զի որպէս մեղուքն Թռուցեալ շըրջագայիւն զզանազան և զգունակ գունակ ծաղկօքն. հաւաքեալ վարսիւքն սեւեռեն 'ի կրկնուած ոտիցն զփոշատեսակն 'ի ծաղկաց, ծանրաբեռնեալ գան 'ի մեղուանոցն, բըջջանոցքն յօրինեն զխորիսխն դիւրահալ և քաղցրաճաշակ, որ ամենեցուն իցէ ախորժելի. ըստ նմին օրինակի և երանելիքն աստուածային մեղուքն, Թռուցեալ հոգւովն սըրբով 'ի բուրաստանս աստուածային հասեալ սրբոցն պատուիրանաց, 'ի

գեղեցիկ և յանուշահոտ և 'ի պայ-
ծառազարդ բանից ամբարեալ գե-
ղաղեշիւք յօրինեցին 'ի վայելչու-
աստուածայնոյն , որք ախորժա-
պէս ընթեռնուն , և ցանկութեամբ
լսեն , և խնդութեամբ առնուն 'ի
միտ զպայծառ ճաշակս . քանզի և
ոչ մարմնասէրքն լինին այսպիսի ու-
րախ , յորժամ զորովայնն և ըղ-
պորտն ցանկութեամբն յագեցու-
ցանեն , կամ թէ 'ի վարձկանացն և
'ի ձայնիցն մեղմեղանաց , զոր քնա-
րացն և բամբռանցն երգակցեալք
հնչեն , ոչ կարեն այնքան խընդու-
թեամբ համեմատել զոր Նոքայն ըն-
դունին . զի թէպէտ առ ժամանակ
մի վարկանին դիւրութեան , սակայն
զկնի դառնագոյն քան զլեղի և
դժնդակագոյն գտանի քան զթիւնս
իժից :

Այդ զոր երանելի վարդապետքն
պատրաստեն ոչ դառնագոյն է ,
այլ առաւել քաղցր և անուշահամ .
անուշահոտ ուրախարար և անըս-
պառ . քանզի որք յուսան յԱս-
տուած , և օրհնեն հանապազօր զա-

նուն նորա և միտ գնեն պատուիրա_
նաց նորա, և քան զնա զայլ ոք ոչ կա_
րէ խնդութեան և ուրախութեան
նոցա յաշխարհատիրաց հաստանել.
զի Թէպէտ և ճնշին և աշխատին մե_
ծաւ ջանիւք, այլ խնդութիւն յոյս
նոցա. որպէս և տէրն իսկ ասէ Թէ
Լուծ իմ քաղցր է. և մարգարէն
ասէ, Որպէս զի քաղցր են 'ի քիմս
իմ բանք քո քան զմեղր բերանոյ
իմոյ. և դարձեալ Թէ Բարի են
ինձ օրէնք բերանոյ քո քան զհա_
զարս ոսկւոյ եւ արծաԹոյ: Տեսա_
նե՞ս որ և մարգարէից քաղցր և բա_
րին էր, և առաքելոցն մխիԹարու_
Թիւն և խնդութիւն, զնոյն աւան_
դեցին և մեզ հոգելից և սուրբ վար_
դապետքն. մանաւանդ այս երա_
նելիս և սուրբս Գրիգորիոս հայրա_
պետս մեր, որ սա առաւել քան
զառաւել գտաւ սիրելի Քրիստոսի,
ձեզ առաջնորդ հաւատոյ և լուսա_
ւորիչ. յորոյ ծանեաք զարարիչն
մեր, զոր 'ի վաղնջուցն հետէ մոլո_
րեցան հարքն մեր: Քանզի սա եղեւ
մեզ ճանապարհ կենաց երեւեալ

մարգարէական արուեստիւք և ա-
ռաքելական նշանագործութեամբ
և քարոզութեամբ և վարդապետ
ճշմարտուսոյց · զի թէպէտեւ եղեն
նշանս բազումս առ մարգարէիւքն ,
սակայն 'ի մերում աշխարհիս առա-
ւել եւս գործեցան սքանչելիք կա-
մօքն Աստուծոյ , 'ի ձեռն սրբոյն
Գրիգորի · նաեւ առաքելովքն մե-
ծամեծ եղեն զօրութիւնք , որպէս
ամենեցուն է յայտնի , այլ այսպիսի
ոչ ուրեք տեսանեմք պատմել թէ-
պէտ և եղեւ իսկ 'ի ձեռս առաքե-
լոցն · քանզի 'ի հովանոյ նոցա լինէր
առողջութիւն հիւանդաց , և աղօ-
թիւք յարութիւն մեռելոց · իսկ
աղօթիւք մերոյ հայրապետին , թա-
գաւորին խոզացելոյ դարձ 'ի մարդ-
կութիւն · եւ բազում ցաւագնելոց
առողջութիւն , և յայտնապէս հա-
լածումն դիւաց և քանդումն մե-
հենաց մեծաւ սքանչելեօք քարանց
չինուածոյն անհետ լինել , քրմօքն
հանդերձ , որ ոչ եղեւ այլ ուրեք
գիտեմք · մանաւանդ այնքան բեւրք
'ի միում աւուր նորածնեալ յոր-

քաղցրութիւն աստուածութեանն, որ առաւել գործել Աստուծոյ սքանչանս. զի հրամանաւ բարերարին զետեղ առեալ եփրատական գետոյն՝ որպէս և 'ի հնումն անդ Յորդանան. բայց առաւել ևս աստ լուսոյն շողացելոյ որպէս Իսրայելի և ամբոյն հովանացեալ, նա և զայս գերակայացեալ յերեւութէ պատուական խաչ 'ի մէջ լուսոյն. կամ յառաջնումն զժուժկալութիւնն զանազան և զգաւառն տանջանացն և զանհնարինս կեալ այնքան ամք 'ի խոր վիրապին 'ի մէջ թիւնաւոր օձիցն: Նա որպէս և ես, և այլ ոք ոչ կարէ ասել ուրեք եղեալ զօրութիւն այսպիսի: Արդ զայս ասելով պակասաւորին ինչ ասեմ զառաջինսն: Քաւ մի լիցի ինձ այսպիսի խորհել. այլ կամեցայ ասել զառաւել գթըն Աստուծոյ 'ի վերայ Հայաստան աշխարհին, զի գոհութեամբ հանապազ տացուք փառս ամենասուրբ Երրորդութեանն որ այնքան զօրութեամբ ծանոյց մեզ զիւր մարդասիրութիւն. օրհնեսցուք զանուն Նորա

յամենայն ժամ, զի այսպիսի շնոր-
հեաց մեզ հայրապետ քրիստոսա-
սէր և խնամող 'ի վերայ ժողովրդոց. քանզի հանգոյն Յիսուսի առնէր աղօթս 'ի վերայ կոտորղացն 'ի չար և 'ի դառն կախաղանեին: Իսկ 'ի վարդապետութեանն զցայգն ամենայն խնգրուածս առնէր 'ի վերայ հարուածոցն. եւս առաւել հայցէր 'ի քահանայապետութեանն յաղագս իւրոյ վիճակին, զոր առեալ բաւանդակ յայնմանէ յոր յուսայրն և 'ի մեզ համբարեաց զպարգեւս երկնայինս, և յետ այսորիկ զիւրոյ զվարդապետութեանն յայտնեաց զիւր մեզ զխրատ ամենայն վարուց այսքանեօք ճառիւք. զի որ զկնիս եաք գալոց՝ մի՛ զրկեսցուք 'ի խրատու շրթանց Նորա:

Արդ գիտեմ թէ որպէս ինձ խնդութիւն է ասողիս յիշատակ սուրբ վարդապետիս, ուրախութիւն է և ձեզ լսողացդ: Քանզի սա որպէս և ամենեցուն քաջայայտ է, աշխարհաւ Պարթեւ, գաւառաւ Պալհաւ, յազգէ Արշակունի,

'ի ցեղէ Սուրենեան, 'ի հօրէ Անակ կոչեցեալ, 'ի հիւսիւսային կողմանս բացափայլեաց զլոյս վարդապետութեան իւրոյ 'ի խաւարային մրճացեալ սիրտս մեր, և ծանոյց մեզ զարեգակնն արդարութեան ծագեալ 'ի վերայ երկրի: Վասն որոյ և մեզ պարտ և պատշաճ է սիրել զնա և պատուել, յիշատակօք ուրախապայծառ, և տօնիւք ցնծութեանց, և մեծարել իբրև զմարգարէ և զառաքեալ, զմարտիրոս և զխոստովանող, զհայրապետ և զառաջնորդ, զվարդապետ և զճգնաւոր, և որպէս զմիայնակեաց. զի առաքինութեամբն իւրով զայս ամենայն լրով կատարեաց. որ զկնի ամենայն հրաշիցն եղեալ 'ի լերինս ամայանայր, զի անզբաղապէս ընդ Աստուծոյ խօսեսցի հանապազ, հանգոյն նախամարգարէին մեծին Մովսեսի, և նմանեալ Եղիայի Թեզբացւոյ, որք եղեալ 'ի գլուխս լերանց աղօթս առնէին 'ի վերայ Իսրայելին. Նոյնպէս և սուրբն Գրիգոր 'ի վերայ Հայաստան աշխարհին մա-

տուցանէր պաղատանս բազում արտասուօք և ուժգին գոչմամբ առ այն որոյ աչքն 'ի վերայ արդարոց, և ականջքն յաղօթս նոցա, և լսելի լինէր առ լաւութեանն, և ծաւալեաց 'ի մեզ զգութ բարերարին, 'ի սկզբան հայցուածոց իւրոց մինչեւ ցայսօր ժամանակի. զոր նախ առեալ 'ի Տեառնէ, զժուժկալութիւն չար և անողորմ, յերկար և բազում տանջանացն, և յետ այնորիկ ըղխրատ նեղչաց իւրոց 'ի մոլորութենէն, և զկնի բժշկութիւն հարուածելոցն, և քանդումն զարմանալեօք պղծալից պաշտամանցն, և փախըստեայ լինել սեւագունդ և չար զօրացն 'ի կողմանս Կաւկասու լերինն։

Իսկ 'ի քահանայապետութեան ծնեալ աւազանաւն սրբով զբազմահոյլս ժողովրդոցն 'ի յորդեգրութիւն բարձրելոյն, յորմէ լոյսն շողաձեւ երեւութացաւ տպաւորելով քառաթեւին յերկնուստ վըկայեալ, և մարգարէականն կատարեալ որ ասէր. Ո՞ լուաւ, ո՞ ետես այսպիսի իրս ինչ, եթէ երկնեաց

երկիր 'ի միում աւուր և ծնաւ ազգ-
մի ոգւոյն . և յետ այսորիկ զշինուածս
որոց եկեղեցեացն քահանայիւք և
և վարդապետօքն զարդարեալ ,
հանդերձ հրեշտակացեալ ժողովր-
դովք : Քանզի երկինք եղեալ 'ի
բնակել հրեշտակաց ընդ մարդկան ,
աղօթիւք սրբոյն Գրիգորի :

Բայց մի' ոք աղաւաղեսցէ զկրկնուածս
բանից որ ախորժելի է ինձ յերկա-
րել զհրաշս որ առ մեզ գործեցաւ ,
թէպէտև ոչ կարասցի ողորկագու-
նօք բանիւք ըստ արժանեացն ճա-
ռել , այլ լուր , ո՛վ սիրելի , յօժա-
րութեամբ յաղագս որ վասն մերոյ
հայրապետութեան : Քանզի և սա ոչ յօ-
տարոտեաց եկեալ հասեալ մեզ 'ի
գլխաւորութիւն , այլ յառաջնոց
առաքելածառայիցն 'ի բնական հարցն
մերոց սերեցեալ 'ի նոյեան Սեմայ
ամեմ , յԵբերայ և Փաղեկայ և 'ի
Թարայեանն Աբրահամէ , 'ի Քե-
տուրական ծննդոցն , որ յետ մա-
հուանն Սառայի ամուսնոյ Աբրա-
համու զՔետուրա 'ի կնութիւն : Իսկ
յետ ծննդեան որդւոցն առ կեն-

դանութեանցն իւրով մինչեւ 'ի յորդւոյն միածնէ Իսահակայ , արձակեալ պարգեւօք յարեւելս , որ տիրեցին բազում միձակաց ըստ բանիւն տեառն զոր խոստացաւ Աբրահամու , Թէ Թագաւորք ազգաց 'ի քէն ելցեն . քանզի Թագաւորեցին ամենայն արեւելից եւ այլոց ազգաց . ուստի եւ քաջն Արշակ եւ 'ի նմանէ սերեալ Արշակունիք եւ նախնիք սրբոյն Գրիգորի . զոր ազգաբանութեամբ ճառեաց մեզ աչող քարտուղարն Սահակայ Բագրատունւոյ Մովսէս Խորենացի , որ կոչեցաւ Քերթողահայր . ուստի եւ մեք երկրորդեցաք յաղագս երանելւոյ վարդապետիս մերոյ Գրիգորի , որ զկնի ամենայն բարեաց հարոյց մեզ , գրեաց եւ զճառս զայսոսիկ յաճախապատումս 'ի հաստատութիւն հաւատոց , եւ յուսումն վարուց առաքինութեանն , եւ գեղ կենաց ապաշխարութեան , եւ զկնի հրաժարեւոյն զշահս պարգեւեաց , զոր ննջեցելոցն հրամայէ յիշատակ առնել , մանաւանդ 'ի ձեռն զենմանն

Քրիստոսի, և արժանաւոր քահանայից հայցմանց. և ոչ զղջացելոցն խոստովանութեամբ, ոչ ասէ օգուտ լինել վասն նոցա յիշատակաց, այլ ծանր վիշտս ընդունել 'ի Քրիստոսէ, որ ոչ ապաշխարեցինն։

Զայսպիսի շահաւոր և զօգտալից խրատ եթող մեզ սիրելին Քրիստոսի սուրբն Գրիգորիոս, հաւատարիմ և իմաստուն ծառայն, որ բազմապատկեաց զտուեալ քանքարն, և եմուտ յուրախութիւն Տեառն իւրոյ. որոյ աղօթիւք մինչեւ ցայսօր հաստատուն և անշարժ մնաց Ճշմարիտ և ուղիղ հաւատն. զի թէպէտեւ յայսմ ժամանակի 'ի թուլամորթութիւն կրթեցաք մի առ միով, 'ի ծանծաղ և 'ի տարտամ վարս, սակայն որ կամիցին ապրել վաղվաղակի զերծանին 'ի պատժոց առաջնորդութեամբ սրբոց պատուիրանաց, և ուղղափառ հաւատոց։ Բայց աշխարհասէրք և բարեկեցիկք, ոչ կարեն ընդունել զհոգւոյն Աստուծոյ զպատգամն, այլ կուտեցին ըստ ցանկութեանց իւ-

րեանց վարդապետս ըստ ախորժե֊
լոյ լսելեաց, զճշմարտութիւնն 'ի
ստութիւն փոխարկեցին․ որք այժմս
երեւին բազումք զարտուղեալ, ո֊
մանք ասեն եթէ քրիստոնէից չէք
տանջանս, թէպէտեւ մեղուցեալք
իցեն, և այսոքիւք բազումք հետազօ֊
տեալք կորնչին․ զի ասեն թէ գրեալ
է Որ հաւատայ յորդի ոչ դատա֊
պարտեսցի, և այլն, եթէ Որ խոս֊
տովանեսցի զիս առաջի մարդկան,
խոստովանեցից և ես զնմանէ առա֊
ջի հօրն երկնաւորի․ և դարձեալ
թէ Որ հաւատայ յիս, թէպէտեւ
մեռանի կեցցէ, և Որ ուտէ զմար֊
մին իմ և ըմպէ զարիւն իմ զմահ
'ի յաւիտեան մի՛ տեսցէ։ Եւ այլ
եւս հաւաքեալ այսպիսի բանս ըզ֊
բազումս կորուսանեն․ մոռացեալ
է նոցա զոր գրեացն Յակովբոս եղ֊
բայրն տեառն, եթէ Հաւատք ա֊
ռանց գործոց մեռեալ են, որպէս
մարմին առանց հոգւոյ․ և որ խոս֊
տովանեալ առաջի մարդկան, հան֊
դերձ գործովք լինել առէ խոստո֊
վանութիւն, զի առէ․ Տեսցեն ըզ֊

գործս ձեր բարիս և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս ։ Տեսանեմս զի 'ի գործոցն կատարին հաւատքն, նա և զդիւաց ասէ թէ հաւատան և սարսեն, այլ տանջելոց են ըստ բանին տեառն. և հաւատոյն ասէ մեռանի՝ կեցցէ, զմեղացն ասէ մահ մեռանել. և Որ զայս զկնի իմ ասէ, ուրասցի զանձն իւր. զոր և Պաւղոս յայտնագոյն ասէ, թէ Այսուհետև համարեցարուք զանձինս մեռեալ մեղացն, և դարձեալ եթէ մեռարուք օրինացն մեղաց, և որ զմարմինսն իւրոյ ասէ տէրն, ուտել և կեալ արժանաւորութեամբ հրամայէ ուտել, զի մի զՅուդայինն կրեսցեն պատուհաս, նաև Պաւղոս ասէ զանարժանիցն թէ դատաստան անձին իւրոյ ուտէ և ըմպէ, զի ոչ պատկառի 'ի տէրունական մարմնոյն. ծանեա՞ր զպատիժս անարժանիցն, տեսե՞ր զհաւատս առանց գործոց դատարկ. և երանի՜ թէ միայն դատարկ, և ոչ լի տանջանօք. այլ ես ցուցանեմ քեզ 'ի բազում տեղիս զխաւարն արտաքին

և զանեզրական պատուհասն այնո֊
ցիկ․ որք զճշմարտութիւնն անիրա֊
ւութեամբ ունին, այսինքն զհա֊
ւատս առանց գործոց, որպէս ձա֊
խակողմեանքն լուան զդատավճիռն,
քանզի ոչ եթէ զմեծամեծ ինչ չա֊
րեաց նշանակէ, այլ զբարեացն չը֊
գործելոց, և ծառայն անպիտան որ
զքանքարն առանց շահուցն մատու֊
ցանէր, և միւս ծառայն որ վասն ընդ֊
արբեցողան ուտելոյ և ըմպելոյ մի֊
ջակտուր եղև ։ Իսկ արդ զիա՞րդ
ասիցեն թէ քրիստոնէից չէք տան֊
ջանք․ զի եթէ ծառայն որ ասեն
զօրինակ հաւատացելոցն չունէր, ա֊
պա վասն էր յաւելոյր եթէ զբա֊
ժին նորա ընդ կեղծաւորան դիցէ․
կամ ո՞չ իմանաս զկուսանացն յի֊
մարութիւնն, որ առանց սիրոյն իւ֊
ղոյ և ողորմութեան՝ յառագաստէ
փեսային արտաքս ընկեցան․ կամիս
զի և զհաւատոյն ցուցից, որ և ին֊
քեանք իսկ վկայեն թէ չէին յան֊
հաւատիցն, զի յանուն քո ասէին,
դեւս հանեալք և զօրութիւնս բազումս
արարաք․ որ քաջայայտ իսկ է, թէ

առաջնորդք և քահանայք էին . կե-
րօք և արբօք ատէին զմարմին և զա-
րիւնդ առաջի քո , և լուան եթէ ի
բաց կացէք յինէն ամենայն մշակքդ
անիրաւութեան . մեք են յան-
դուգքն և ապիրատքն որք ասեն թէ
քրիստոնեայք թէ և ոչ ապաշխարեն
սակայն 'ի տանջանս ոչ տառապե-
ցին . ասասցուք յիմարեալոցն թէ մեք
դիցէք զքարոզ կարապետին Յով-
հաննու , որ զտապարէն և զծառոյն
գուշակէ և առ արմատոյն դնիլն և
վաղվաղակի հատանելն , ասէ եթէ
ոչ ապաշխարիցէ : Իսկ Տէրն մեր ոչ
վայրապար ինչ զնոյն բան երկրոր-
դէ , այլ զի ցուցցէ զկարեւոր պէտս
ապաշխարութեանն և սպառնալեօք
սահմանէ , թէ Ամենայն ծառ որ
ոչ առնիցէ պտուղ բարի՝ հատանի
և 'ի նիւթ հրոյ պատրաստի . և Դա-
ւիթ նոյն գուշակ ասէ , թէ Տե-
ղացէ 'ի վերայ մեղաւորաց հուր և
ծծումբ , զի այն է բաժին և բաժակ
նոցա . հանգոյն նմին և Եսայի ասէ ,
թէ Որպէս վառի եղեգն 'ի հրոյ ,
այնպէս այրեսցին 'ի բորբոքեալ բո-

ցոյն, զի ոչ կամեցան զօրէնս տեառն զօրութեանց, այլ և գրգռեցին եւս զբանս սրբոյն Իսրայելի ։ Եւ դարձեալ եթէ Այրեացին անօրէնք և մեղաւորք 'ի միասին, և ոչ ոք իցէ որ չիջուցանիցէ, այլ նոքա ոչ զայս ամենայն բարիոք իմանան, այլ եւս ըղծաղրալիցն յաւելուն. այս ամենայն ասեն առ հեթանոսսն ճառեալ է ։ Տինա, քանզի կուրութիւն է զայս խորհողացն. ո՞չ ապաքէն մարգարէքն առ Իսրայէլ բողոքէին, և առաքեալքն զթուղթսն առ հաւատացեալսն և ոչ առ անհաւատսն գըրէին ։ Պետրոս գրէ թէ բաւական է անցեալ ժամանակն լինելոյ կամացն հեթանոսաց, և Պաւղոս հանգոյն նմին, զի եթէ Երբեմն խաւար էաք, արդ լոյս էք 'ի տէր, իբրեւ զորդիս լուսոյ գնասջիք, և դարձեալ ասէ թէ Ուրացուք զամպարշտութիւն և զաշխարհական զցանկութիւն, զի և ամենայն գիրք աստուածաշունչք զնոյն գուշակեն ։ Բայց ոչ գիտեմ թէ ուստի՛ է նոցա այս ստաբանութիւնս՝ որ ասեն թէ միայն հա-

ւաւորքն բաւական են, գոնէ 'ի պատ-
ժոց զերծուցանել ախտորժելի և եւս
Թէ էր այդպէս. քանզի չեմ յայն-
ցանէ որ զերծանելոցն են յորդանցն
Թիւնաւորաց, և 'ի կրճանել ատա-
մանցն, բայց գիտեմ եթէ այդմ
հաւանեցայց՝ եւս բազմացուցից 'ի
վերա իմ զչար տանջանսն. զի եթէ
մինչ կատաղած և սպառնալիք անո-
զորմ տանջանացն 'ի վերայ մեր կան,
և 'ի ցանկութենէ մարմնոյ և 'ի փափ-
կութենէ հեշտութեան և 'ի զազիր
մեղաց հանապազ հերքեմք, իսկ որ-
չափ Թէ զայն 'ի միջոյ 'ի բաց բառ-
նայցեմք: Այլ մեզ մի լիցի զայսպի-
սիս ինչ խորհել, զի ուսաք 'ի սրբոց
պատուիրանաց եթէ մի տղայաբար
խաբեալ մոլորիցէք. քանզի և Պաւղոս
զայնօսիկ նզովիւք փակէ, որ զտէր
մեր Յիսուս Քրիստոս ոչ սիրեսցեն,
և տէր ինքնին ասէ Թէ Որ զբանն իմ
ոչ պահէ ոչ սիրէ զիս, զի սիրելն
զնա՝ պահելն զպատուիրանս նորա,
որպէս և Յովհաննէս 'ի կաթողի-
կէին ասէ, եթէ Որ ասիցէ եթէ
ծանեայ զնա, և զպատուիրանս նո-

րա ոչ պահէ, սուտ է և 'ի խաւարի է տակաւին. և դարձեալ եթէ Որ ասիցէ 'ի նմա բնակել՝ այնպէս պարտի գնալ, որպէս և նայն գնաց, զի ոչ կատարեաց զկամս մարմնոյ՝ այլ զՀօր, և մեզ զինքն ետ օրինակ առաքինութեան, ասելովն, Ուսարուք յինէն զի հեզ եմ և խոնարհ սրտիւ: Իսկ որ ոչն անսայցեն բանից նորա՝ պատժելոց են, որպէս և Դաւիթ իսկ վկայէ, թէ Ընկալարուք զխրատ նորա, զի մի բարկասցի տէր, և կորնչիցիք 'ի ճանապարհացն արդարութեան. զի խրատ նորա քաղցրայայտ իսկ է, որ սիրելն ուսոյց զթշնամիս և 'ի վերայ նեղչացն աղօթս առնել, և ընդ դուռն մտանել 'ի կեանսն յաւիտենից. և որք զմորոսն որ փոքր ինչ կարծի՝ ասեն յանարգանս եղբօրն, պարտաւոր առնէ տանջանաց գեհենին, տեսեք զպատիժն չգործելեացն զբանիս: Իսկ որ զմեղսն ոչ ապաշխարիցեն, զիա՞րդ կարիցեն ապրել 'ի հրոյն դատանութեանցն, զի Եթէ արդարն հազիւ կեցցէ ասէ, իսկ ամպարիշտն

և մեղաւորին ո՞ւր գտանիցին : Բայց
ասէ եկ ասա տեսամ՝ իցէ այս նոր
ամպարշտութիւն և գաղտագողի
պատարանքս . ասեն՝ ասէ վարդապետ
ոմն այսպիսի , յոյս գնէ քրիստո-
նէից , եթէ չիք տանջանք , և 'ի գրոց
վկայութենէ հաւաստարմացուցանէ
զբանս : Եւ ասէ եթէ ծանրագոյն
պատուհասս զիրք յաղագս ահ ինչ
արկանելոյ ասեն և ոչ եթէ ստու-
գութեամբ : Ո՛հ անպիտան և ցուրտ
միթաբանութեան . այսպիսի խոր-
հրդովք գլխովին իսկ զանէրն անար-
գեացեն , զի նա ասէ , եթէ յոլով
մի՝ ոչ անցցէ յօրինաց և 'ի մարդա-
րէից , և եթէ երկինք և երկիր
անցցեն , և բանք իմ մի անցցեն .
նա և ամենայն մարգարէքն և առա-
քեալք իւրեւ 'ի միոջէ բերանոյ խօ-
սեցան , նմանապէս և բազում հոյլք
վարդապետացն երանելեաց 'ի զօ-
րութենէ հոգւոյն սրբոյ . որպէս
միով լեզուաւ մեկնել զգիրս բա-
ցայայտեցին . որ զնոյն հուր և գե-
հեան մեղաւորաց և անհնարանգից
և չապաշխարողացն հանդերձելոց է

սաեն ։ Իսկ քո զայս ամենայն միախորհ և միասիրտ ժողովս թողեալ, զմիոյ այլանդակի և այլաբանի զկնի ընթանաս և անընտրաբար մոլորիս, նմանապէս նախահօրն Ադամայ, որ զԱստուծոյ զհրամանն թողեալ զօձին բարբոք վարկաւ, որ 'ի սատանայէ հնչեցաւ ։ Արդ մեզ եղբարք մի՛ լիցի քակել որոշել 'ի համահով ժողովոցն մինչև ցմահ ․ զի թէ ոմանք անարգեսցեն զբանս մեր որ 'ի բազմացն սակաւ ինչ բերաք 'ի մէջ մուրացուածոյ բանիւք, սակայն զգաստից և մտադրացն առ 'ի յուղղութիւն բաւական է ․ իսկ չքթելոցն և խլացելոցն, որ իբրև իժի և քարբի խցեալ են զականջս իւրեանց, զի մի՛ լուեալ առցեն 'ի գեղատուէն զկենացն դեղ, թէ և բաւանդակ զամենայնն ընթեռնուս, չեք ինչ նոցա օգուտ ․ քանզի տերունեան բանիցն ոչ գոյ 'ի նոսա տեղի ․ զի այնպիսիքն են որդիք կորըստեան՝ որ առնեն զկամս մարմնոյ և մտաց, և ծառայեն որովայնից առաւել քան Աստուծոյ ։

Իսկ ոմանք հենգնեն զմեզ թէ ով ոք պահեաց այժմ առ մեզ զայդ պատուէր, որ դու ստիպես զմեզ անմեղս լինել, յորմէ զգաստանալ և զգուշանալդ՝ պիտոյ էր. դու հակառակ նմին ծուլանաս և վստահ լինիս թէ ամենեքեան ամպարիշտք և մեղաւորք են. ո՞չ գիտիցես թէ այդ իսկ են քեզ կորուստ. չիմանաս, զի եթէ քաղումք դոյին 'ի հաստատութեան, դու թէ և գլորէիր՝ ձեռն տուեալ զքեզ կանգնէին. իսկ եթէ ոչ ոք իցէ յուղղութեան, և դու անկանիցիս, ո՞ յարուցանիցէ: Արդ ոչ է պարտ այդուիկ վստահ լինել թէ ամենեքեան օրինացն Աստուծոյ արհամարհողք, և եթէ ամենեքեան մեղան, յայնմանէ գտանիցեն ներել թողութիւն: Բարէ, քանի՛ անմտութիւն է զայս խորհողացն: Զի եթէ մեղացն առաւելութիւն զԱստուած քաղցրացուցանէր, և 'ի բարկութենէ ցածուցանէր, ապա ընդէ՞ր այնքան բազմութիւնք սատակեցան 'ի Ջրհեղեղէն. զի գրեալ

է զնոցանէ. , թէ Ամենայն մարդ պղծեաց զճանապարհ իւր 'ի վերայ երկրի. կամ Սոդոմայեցիքն ընդէր ոչ ապրեցան ըստ ձեզ. զի քննեցաւ 'ի հարիւրէն մինչեւ ցատամն եւ ոչ գտան անդ բարեգործք, նաեւ ըղտուենն Ղովտայ առ հասարակ յերիտասարդաց մինչեւ ցծերս ամենայն ժողովուրդն պատեցին. եւ այնմիկ չհանդարտեաց Աստուած : Իսկ այժմ վարկանիմ փոխել զբնութիւնն Աստուծոյ. ո՞ն անգր. մի՛ լիցի զայս խորհել կամ խօսել: Քանզի մարգարէիւն ասէ, Ես եմ Աստուած եւ ոչ փոխեցայց : Դադարեա այսուհետեւ յայդպիսի պատճառանաց. զի թէ ոչ ապաշխարեսցես՝ կորուսանելոց ես, եւ մի հաւանիր այնմ զոր ասեն այժմուքս, թէ եւ յոգնամեղքն թէպէտ եւ ոչ զղջացեալ խոստովանութեամբ, եւ ոչ արժանաւորք եղեալ հաղորդութեանն մեղսաքաւիչ 'ի ձեռն քառասնօրեայ պատարագին, 'ի պատժոց ոչ զերծանին, եւ զլոյսն ժառանգեն եւս, որք առաւել իմացան քան զգրեալ

ղըն . զի այս այնմ հանգոյն է, որք առեն, եթէ քրիստոնեից ոչ գոն տանջանք . զի Ցովհաննէս ոչ հրամայէ խնդրել թողութիւն որք առ 'ի մահ են մեղուցեալք : Իսկ ո՞ համարձակագոյն իցէ քան զնա և սիրելի Քրիստոսի, որ և զլանջօքն տեառն անկեալ վասն մտաւնութեն հարցանէր . նա չհրամայէ թէ և եղբայր իցէ՝ այնպիսումն աղօթել, և նոքա յանգգնին : Իսկ եթէ ոմանք ասիցեն, եթէ ո՞չ առաքեալն պարտ է հայցել վասն նոցա և պատարագ մատուցանել լաւագոյն է քան ըղջառնելն, զնոյն և ես ասացից 'ի մտաց և ոչ 'ի գրոց . զի գիրք բազում անգամ արգելլին, որոց մեղքն առ 'ի մահ են. նա եւ սուրբ հարքն որ 'ի Նիկիա ժողովեցան զչապաշխարեալսն մեկնեցին մահուչափ., և զոմանս փակեցին իսկ չառնել յիշատակ որ ընդ եղբօրն կնոջ ամուսնասցի . և այլ կանոնք այնոցիկ որ անգարծ իցեն լալ և կոծել զինքեանս, ո՛չ հրամայեցին առնել յիշատակ : Եւ ոչ այնոցիկ՝ որ յարիցեն 'ի վե-

րայ եղբօրն սպանանել, և նա փախըստական եղեալ բողոքիցէ միանգամ և երկիցս, եթէ մի՛ դար ըզկնի իմ, գուցէ դարձեալ պատուհասիցեմ զքեզ, և նա ոչ անսայցէ, այլ հարեալ ՚ի նմանէ մեռանիցի, և ընդ անձնամահս համարեալ զրկիցի ՚ի յիշատակէն. զի և քահանայքն ասէ, պատժին, որք ինքնասպանացն մատուցանեն պատարագ: Տեսանե՞ս զի այս ամենայն քրիստոնեայք են և կորստականք, և այլք հանգոյն սմին, և բազումք ևս և յոլովք: Քանզի և սուրբն Գրիգոր ստուգապէս ցուցանէ գրեալ յերեքտասաներորդ ճառին, թէ չզղջացելոցն խոստովանութեամբ, և ոչ մերձեցելոցն ՚ի փրկական խորհուրդն, զի՞նչ պիտոյ է ասել վասն նոցա յիշատակի, որ դառն արտասուաց են արժանի, և ծանր վիշտս ՚ի Քրիստոսէ ընդունելոց են. այլ խոստովանելոցն և հաղորդելոցն, թէպէտ և ծանրամեղք իցեն՝ զերծանել ասէ ՚ի պատժոց, և զյիշատակն առնել հրամայէ:

Արդ պարտ ու պատշաճ է մեզ անսալ նմա, և ոչ աւելի ինչ քան զվարդապետն մեր Ճարտարել առ 'ի կորուստ բազմաց, զոր և այժմ 'ի բազմաց լսեմք եթէ այս անուն և այն անուն ժառանգք արքայութեան եղեն. զի ումեմն հարիւր, և ումեմն եւս աւելի՝ մատեան՝ քառասուն. և ընտրութիւն ոչ առնեն, զի ոմանց յոլով ինչքն 'ի յափշտակութենէ, և 'ի գողութենէ և 'ի զրկանաց և յայլ յանիրաւութենէ ժողովեալ են։ Իսկ զայս 'ի յառաջնորդացն լսեն, եթէ այս անուն պատարագօքն փրկեցաւ, և գիտակ իսկ են չարեաց նորա և հաւաքման ընչիցն անիրաւութեան, զիա՞րդ գայցեն յիրաւունս և յարդարութիւն. ապա յիրաւի տեսանեմք զբազումս յանիրաւութենէ յղփացեալ և անհոգացեալ, յինչսն ապաստան եղեալ, և այլովք զկարեւոր պէտս հոգւոյ թողուն, և ո՛չ իմանան թէ զյափշտակեալն և զգողօնսն ոչ ընդունի Աստուած։ Այլ եւս բարկանայ, որպէս և Եզեկիէլ իսկ ա-

սէ, և Եսայի հանդոյն Նմին, եթէ Անօրէնն որ մատուցանիցէ պատարագ այնպէս է որպէս թէ շուն ոք մորթիցէ, կամ թէ հարկանիցէ ոք զկառափն մարդոյ: Նմանապէս և միւս մարգարէն ասէ, եթէ ոք 'ի զրկանաց տառապելոց մատուցանիցէ Աստուծոյ պատարագ՝ այնպէս է համարեալ, որպէս զորդի առաջի հօր իւրոյ զենուցու:

Իսկ որ 'ի մահուանն զղջասցին խոստովանութեամբ և արտասուօք, և յուսով հաղորդեալ զվերջին թոշակն, զնա և ես ըստ գրոց գովեցից, մանաւանդ թէ և զզրկանսն և զյափշտակութիւնսն անդրէն 'ի կողոպտեալսն դարձուցանիցէ չորեքկին հանգոյն մաքսապետին Զաքէի, և զկէս ընչիցն աղքատաց բաշխեսցէ և յեկեղեցի. ասասցուք և մեք ըզբանսն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. թէ Այսօր եղեւ փըրկութիւն տանս այսմիկ. զի այսպէս ունէաք 'ի հին և 'ի նոր կտակարանաց. Պատուեա՛ զտէր 'ի քոց արդար վաստակոց, և հան նմա պտուղ

'ի քոց յարգարութեան արմատեաց։ Ես այսպէս և վարդապետք մեր միախորհ նոցա ուսուցանեն, և աւելի ինչ ոչ գրեցին որպէս այժմուքս բարբաջեն, որ 'ի թուլամորթութիւն և 'ի յուռութիւն կրթեն ըզբազումս։ Իսկ սուրբն Գրիգորիոս լուսաւորիչս մեր ոչ ինչ թողեալ թերի յօգտակար խրատուցն՝ զոր ո՛չ եցոյց մեզ, որով մարթեմք ապրել 'ի տանջանաց, և կենաց անվախճանից ժառանգաւոր լինել։

Արդ և մեզ, եղբարք, պարտ է զնա ընդունել ընդ առաքելումն և պատուել ընդ մարգարէսն, և անձուկ սրտիւ սիրել ընդ մարտիրոսան, և ունկնդիր լինել խրատու աշակերտք վարդապետի, և ոչ աւելի ինչ քան զհրամայեալսն 'ի նմանէ իմանալ 'ի կորուստ անձանց և այլոց բազմաց. զի բանք նորա կենդանի են, և այսօր որ կամիցին սիրով լսել և հաւատով ընդունել, և բազում շահըս գտանել 'ի բանից նորա։ Քանզի և տէրն մեր յաղագս սիրոյ նորա մինչեւ ցայսօր և ց յաւիտեանս խնա-

մէ 'ի վերայ մեր, և անգրգռելի պահեաց աղօթիւք նորա զհայաստան աշխարհս 'ի դառն հերձուածոյ հերեսիոտացն: Թէպէտ և մեռաւ աներեւութապէս, որք պատահել սրբոյն անգիտութեամբ՝ իբր ծերոյ ումեմն կրօնաւորի եկեալ վախճան եւ ելք, հանգոյն իւրում տեառն կենդանի և բարեխօս այնոցիկ՝ որ զկնի ուղիղ վարուց նորա հետեւին. շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի՝ ընդ որում Հօր և սուրբ Հոգւոյն փառք, իշխանութիւն և պատիւ՝ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. Ամէն:



# ՑԱՆԿ

Դ. ՀԱՏՈՐՈՅ